# ՔՈ ԱՊԱԳԱՅԻ ՀԱՄԱՐ

Պիոներ, դու դեռ մանկապարտեզ էիր գնում, կամ նոր էիր ոտք դրել դպրոցի շեմքին, երբ մեր հայրենիքն սկսեց յոթնամյակի կառուցումը: Այդ յոթը տարիներում դու մեծացար, դարձար պիոներ և հիմա էլ պատրաստվում ես մտնելու Լենինյան կոմերիտմիության շարքերը: Ու քեզ հետ միասին, քո աչքի առաջ, յոթնպմյակի յուրաքանչյուր տարվա հետ աճեց, ամրացավ, ավելի հզորացավ նաև մեր սիրելի հայրենիքը: Աչքերիդ առաջ փոխվեց, անճանաչելի դարձավ քո հայրենի գյուղը, քո հարազատ քաղաքը, դու նոր ու լուսավոր դպրոցական շենք ստացար, քո հարազատները, ընկերներն ու հարևանները նոր բնակարան ստացան ու մեծացավ, ընդարձակվեց հայրիկիդ գործարանը, որն այժմ իր արտադրանքն ուղարկում է աշխարհի բոլոր ծայրերը:

Եթե յոթնամյակի սկզբին դու դեռ չէիր վարժվել այն մտքին, թե ուղեծիր է բաց թողնված արհեստական արբանյակ, հիմա արդեն տիեզերական տարածությունները ճեղքող բազմաթիվ արբանյակների ու տիեզերանավերի հաշիվն էլ չես պահում: Եվ աշխարհում Երկրի առաջին արբանյակը բաց թողած մեր հայրենիքը անցած յոթ տարիներում առաջինը հասավ Լուսին, որի վրա այժմ իր հանգրվանն է գտել մեր վիմպելը՝ Սովետական Միության գերբը վրան: Աշխարհում առաջին տիեզերագնացը, որ երկինք թռավ ու վերադարձավ Երկիր՝ սովետական քաղաքացի էր և սովետական քաղաքացի էր առաջինը, որ տիեզերանավից դուրս եկավ ու ազատ ճախրեց տիեզերքի տարածություններում: Սովետական տիեզերանավն էր, որ աշխարհում առաջին անգամ նկարեց Լուսնի անտեսանելի մասը, և մեր տիեզերանավն էր, որ Վեներա հասցրեց սովետական գերբը: Սովետական տիեզերանավը աշխարհում առաջինն էր, որ փափուկ վայրէջք կատարեց Լուսնի վրա ու այնտեղից հեռուստացույցով Երկիր հաղորդեց Լուսնի մակերեսի լուսանկարները:

Բայց տիեզերքի նվաճումից բացի, յոթնամյակի ընթացքում մեր հայրենիքում շարք մտան նաև բազմաթիվ հսկա գործարաններ ու էլեկտրակայաններ, միլիոնավոր հեկտար անբերրի ու խոպան հողեր դարձան բերքատու և ոռոգելի, դարձան ծաղկուն պարտեզներ ու այգեստաններ՝ շնորհիվ նոր բացված հազարավոր կիլոմետր երկարությամբ ձգվող ջրանցքնե-

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶ
ՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆ
ՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ




րի: Այդ ժամանակաշրջանում տասնյակ գետեր փոխեցին իրենց ուղղությունը, նորանոր լճեր ու լճակներ գոյացան ու նավարկելու դուրս եկան հսկայական նավեր, փոխվեց, գեղեցկացավ մեր երկիրը, գեղեցկացան քո հագուստները, ավելացավ քո պապիկի կենսաթոշակը և ավելացավ աշխատավարձը քո ծնողների:

Այս ամենը և էլի շատ ու շատ փառապանծ գործեր են մեր երկրում կատարվել յոթնամյակի ընթացքում: Իսկ ո՞վ է արել այս վիթխարի աշխատանքը. իհարկե, քո ծնողները, քո ավագ եղբայրները, մեր մեծ հայրենիքի հերոսական ժողովուրդը, որին ղեկավարում է, ճանապարհ է ցույց տալիս Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը:

Եվ ահա մարտի վերջին մեր հայրենիքի բոլոր ծայրերից Մոսկվա էին եկել հարազատ լենինյան կուսակցության արժանավոր զավակներն ու ընտրյալները՝ իրենց քսաներեքերորդ համագումարին, որն ամփոփեց անցած յոթնամյակի արդյունքներն ու հաստատեց նոր հնգամյակի դիրեկտիվները:

Նոր, չտեսնված հեռանկարներ է բացում քո առաջ, մեր ողջ ժողովրդի առաջ նոր հնգամյակը: Հնգամյակի ընթացքում հսկայական հսկա նորակառույցներ շարք կմտնեն, կբացվեն նոր ջրանցքներ, սովետական մարդը տիեզերքի ավելի խորքերը կթափանցի և, ով գիտի, գուցե հենց այս հնգամյակում նա առաջինը ոտք կդնի Լուսնի վրա, կնվաճի նրա տարածությունները: Եվ այս ամենը քո՛, քո ծնողների՛, սովետական ո՛ղջ ժողովրդի բարեկեցության համար, նրա երջանկության համար: Հարազատ լենինյան կուսակցությունը ամեն օր, ամեն ժամ, ինչ էլ որ անելու լինի, անում է մեր ժողովրդի համար, նրա պայծառ ապագայի՝ կոմունիզմի համար:

Իսկ դու, պիոներ, դու ևս շատ բան ունես անելու հնգամյակի ժամանակ: Դու պետք է այնպես անես, որ արժանի լինես կոչվելու կոմունիզմ կառուցող քո ծնողների զավակը, դու պետք է սովորես այնպես, որ կարողանաս շարունակել քո ծնողների, քո ավագ եղբայրների ու քույրերի, քեզ համար սկսած գործը, արժանի լինես կոչվելու մեր հայրենիքի, մեր կուսակցության հավատարիմ, անձնվեր զավակը:







# ԼԵՆԻՆՅԱՆ ԶՐԱՀԱՊԱՏԸ

ՎԼԱԴԻՄԻՐ ԶԱՅԻՆ

Ես դեռ երբեք ոչ ոքից նամակ չեմ ստացել: Եվ ահա երեկ զանգ է տալիս նամակաբերը, ու մայրս մեկնում է ինձ մի ծրար.

— Սա քոնն է, Ալյոշա:

Ծրարի վրա այսպես էլ գրված է՝ «Գրիբկով Ալյոշային: Անձամբ»:

Նամականիշ կա: Բոլոր կնիքները կան: Ամեն ինչ տեղն է: Ու այսպես էլ շրջել է այս ծրարն աշխարհով մեկ, և բոլորն իմացել են, որ № 124 շենքի 168-րդ բնակարանում ապրում է Ալյոշա Գրիբկովը: Այսինքն՝ ես:

Ծրարի վրա կա հետադարձ հասցեն: Եվ նույնպես գրված է՝ 124-րդ շենք, բնակարան № 159, Վալյա Կուլիկով:

Վալյա Կուլիկովը իմ ընկերն է: Նա ապրում է մեր մուտքի ութերորդ հարկում: Հենց նոր մենք միասին հոկկեյ էինք խաղում: (Ձեռնոցներս դեռ վառարանի մոտ չորանում են): Եվ հանկարծ՝ նամակ նրանից:

Ես բացեցի ծրարը, իսկ այնտեղ բոլորովին մաքուր մի թերթիկ էր դրված:

Եվ հանկարծ լսվում է հեռախոսի զանգը:

Մայրս վերցնում է լսափողը և ինձ է կանչում: Ես լսում եմ:

Իսկ հեռախոսի մոտ Վալիկ Կուլիկովն է:

— Նամակն ստացա՞ր, — հարցնում է նա:

— Ստացա, — ասում եմ ես:

— Կարդացի՞ր:

— Ի՞նչ կարդամ: Մաքուր թերթիկ է միայն:

— Իսկ դու խնդրիր մայրիկիդ, որ տաք արդուկ քսի վրան:

— Եվ ի՞նչ կլինի որ:

— Տառեր կլինեն: Նամակը ես կաթով եմ գրել: Ծածկագիր է:

— Ի՞նչ:

— Ծածկագի՛ր: Դե՛, գաղտնի՛ք, է՜լի:

Ու կախեց լսափողը:

Մայրիկս միացրեց արդուկը: Իսկ ես պտտվում եմ շուրջը: Մայրիկս քսում է արդուկը թղթին, ու հանկարծ նրա վրա հայտնվում են տառեր, բառեր:

Ես ու մայրիկս նայում ենք թերթիկին, իսկ նրա վրա գորշնագույն տառերով գրված է.

«Ալյոշկա: Լենինի թանգարանի առաջ մի զրահապատ կա կանգնած: Դասերդ վերջացրու և վազիր զրահապատի մոտ: Երբ ինձ նկատես՝ բարձրացրու ձեռքդ: Եթե ես տեսնեմ քեզ՝ նույնպես ձեռքս կբարձրացնեմ: Իսկ հետո կգնանք Ֆինլանդական կայարանը ու կիմանանք զրահապատի ամբողջ գաղտնիքը: Այդ զրահապատի վրայից Լենինն է խոսել: Պարզ է: Չմոռանաս հագնել կրկնակոշիկներդ: Վալյա»:

Հիմա ե՛ս եմ նրան զանգ տալիս.

— Էդպես էլ միանգամից ասեիր, է՛լի, զրահապատի մասին: Թե չէ նամակ ես ճարել, դեռ արդուկով էլ պետք էր տաքացնել: Ի՞նչ է պատահել քեզ:

— Երեխա՛, — ահա այն ամենը, ինչ ասաց Վալյան:

Հաջորդ օրը ես երկու փոքրիկ խնդիր լուծեցի ու բաժանման մի քանի վարժություններ: Ճիշտ է, մի բաժանման վարժությունն ստացվեց մնացորդով: Երևի, վարժությունը սխալ էին տպագրել գրքում:

Նորից լսվում է հեռախոսի զանգը: Վալյան հարցնում է.

— Դու կարողացա՞ր բաժանել:

— Չէ, — ասում եմ, — մնացորդ է ստացվում:

— Դե՛, բաժանի՛ր, — ասում է նա:

— Ես բաժանում եմ:

Սկսեցի նորից բաժանել: Ու բաժանվեց:

Զանգում եմ նրան.

— Դու կարողացա՞ր բաժանել:

— Այո՛, բաժանվեց:

— Ուրեմն, հիմա՝ զրահապատը:

— Իհարկե, — ասում է Վալյան:

— Լսի՛ր, Վալյա, — ասում եմ ես, — դու անմիջապես դուրս չգաս տանից, մի քիչ սպասիր:

— Ինչո՞ւ:

— Ես հո անմիջապես կճանաչեմ քեզ:

— Լա՛վ:

Կանգնել եմ տրամվայի կանգառում: Երեք կոպեկանոցը պատրաստ է: Երեքկոպեկանոց էլ մյուս գրպանումս է:





Տրամվայը մոտենում է: Մենք, կապույտները ձեռքին, ցած իջանք: Ես երեք կոպեկանոց գցեցի դրամարկղը: Ծի՛նգաց: Նայում եմ ուղևորներին. բոլորը տեսան: Պոկեցի տոմսը, նայում եմ պատուհանից դուրս:

Մեկը դիպչում է ուսիս: Շուռ եմ գալիս. Վալկան է:

— Գնո՞ւմ ենք, — ասում է նա:

— Գնում ենք, — ասում եմ ես: — Իսկ ինչո՞ւ դու մտար այս տրամվայը:

— Հենց էնպես, — ասում է նա, — մտա, ու՝ վերջ:

Իսկ ինչպե՞ս պետք է մենք ձեռք բարձրացնենք:

Վալկան նայում է պատուհանից դուրս, հետո՝ իմ կրկնակոշիկներին ու մտածում է ինքն իրեն.

— Լավ է, որ կրկնակոշիկներ ես հագել:

— Ինչո՞ւ:

— Ով գիտի՝ ուր գնանք: Որ չմրսենք:

— Վալկա, — ասում եմ ես, — բա մեր ձեռք բարձրացնե՞լը: Չէ՞ որ մենք հանդիպում ենք միմյանց:

— Ի՞նչ կա որ, — ասում է Վալկան: — Հիմա ես կիջնեմ, իսկ դու կգնաս մինչև զրահապատ: Իսկ ես կգամ ոտքով: Միայն չմոռանաս բարձրացնել աջ ձեռքդ:

Ու ընկերս, Վալկան, իջավ տրամվայից:

Իսկ ես գնացի ուղիղ մինչև Լենինի թանգարանը:

Ահա և թանգարանը: Ցանկապատի հետևում կանգնած է զրահապատը: Մոտը տղաներ են հավաքվել: Շրջապատել են, ձեռք են տալիս, իսկ մեկը մտել է անիվների տակն ու հոտ է քաշում ամեն բանից: Այնտեղից հայտարարում է.

— Բենզինի հոտ է գալիս: Հի՞ն բենզինի:

Ես էլ սողոսկեցի անիվների տակ: Տղան քաշվեց, տեղ տվեց ինձ.

— Դո՛ւ էլ հոտ քաշիր:

Հետո այդ տղան դուրս եկավ, թափ տվեց շորերը, սկսեց մատով թխթխկացնել զրահը և գիտունի պես ասաց.

— Առաջին կարգի զրահապատ է: Ոչ մի գնդակ սրան չի ծակի:

— Բանն ա՞յդ չէ, — ասում եմ ես:

— Բա ինչո՞ւմն է բանը:

— Այս զրահապատի վրայից Լենինն է խոսել:

Տղաները ծիծաղում են:

— Մի տեսեք, ինչ խելո՞քն է: Կարծես մենք չգիտենք:

Մի աղջիկ, հասակով ինձանից բարձր, ճիշտ է՝ քիչ բարձր, ասում է.

— Ի՞նչ ես վիճում: Կանգնեք հանգիստ ու նայեք:

Ես նայում եմ աշտարակին, որտեղ գնդացիրն է: Ա՛յ թե կրակել է, հա՞: Տեսնես պարկուճները ու՞ր են ընկել: Հավանորեն ընկել են զրահի վրա: Շրմփացել են մեկը մյուսի հետևից: Ու, նշանակում է, զրահապատը շարունակ շարժվել է: Ամբողջովին զրահով է պատած: Բա անիվնե՞րը. պարզապես ռետինից են: Հաստ ռետին է, ու՝ վերջ:




Այդ պահին հանկարծ երևաց Վալկան, ձեռքը բարձրացրեց: Ես էլ բարձրացրի: Սկզբում՝ մեկը, հետո՝ երկրորդը, դեռ թափահարեցի էլ: Ես կանչում եմ նրան.

— Վալկա՛, այստե՛ղ եմ:

— Էդ ձեր մարմնամարզական վարժությունն է, հա՞, — հարցնում է մի աղջիկ վերևից:

# Լենինն ու գեղջկուհին

ԱԼԵՔՍԻՍ ՊԱՐՆԻՍ

Հունաստան

Ամառ:
Կիրակի:
Նա տասնամյան ճանապարհ ընկավ
Հայրենի գյուղից դեպի Մոսկվա.
Այստեղ, Լենինի պահակախմբում
Նրա որդին էր ծառայության մեջ:
Հպարտանում էր գյուղը նրանով.
Հպարտ էր մայրն էլ.
Բայց վշտանում է մոր սիրտը դարձյալ:
Ճամփա ելնելիս՝ նրան ասացին.
Որ հենց Լենինից գնա խնդրանա.
Թե ինչպես է իր որդին ծառայում.
Տիրապետում է մարտական զենքին
Եվ հաշիվն առնում է թշնամիների.
Որ թափառում են սահմանին մոտիկ:

Հոգնած գեղջկուհին մոտեցավ Կրեմլին.
Բայց տվեց մայր ժամապահներին որդու նամակը
Եվ մտավ դռնով:
Կանգնել է կինը վիթխարի բակում.
Զինվորականներն անցնում են.
Քաղաքացիներն իրար գրկելով՝
Ինչ-որ մի տեղ են անհանգիստ վազում:
Կինն անցնում է հարցափորձ անել.
Հայացքը գետնին լուռ թափառում է
Մարդկանցով լեցուն վիթխարի բակում:

Արևն այրում է:
Հոգնել է կինը, ուժ չի մնացել՝
Քաղաքի աղմուկն համաչափ ու խուլ
Սահում է անտես:
Հանկարծ կանգնեցրեց կնոջն անծանոթ
Քաղաքացիական զգեստով մի մարդ:
Եվ կինը անհամարձակորեն ասում է նրան.
Որդիս, որտե՞ղ է Լենինի տունը.
Ո՞նց գնամ մոտը...
Մայրի՛կ, ինչու՞ ես Լենինին ուզում...
Լենինը ես եմ... պատասխանում է մարդը
ժպտալով:

Եվ միանգամից արևոտ բակը ու երկինքն անամպ
Շուռ եկան հանկարծ:
Շփոթվեց մի պահ կնոջ հայացքը...
Ով ծովն է տեսնում առաջին անգամ՝
Նրա գլուխն է այդպես պտտվում:
Կինն հավանաբար
Անչափ շփոթված, հուզված դեմք ուներ:
Ափսո՜ս, չգիտեր, թե չէ նախապես
Ինչպիսի՜ բառեր նա կպատրաստեր:
Ընկե՛ր, ուզում եմ իմ որդուն տեսնել, ասում է
հուզված.—

---

Մանկավարժական փորձությո՞ւնն է, այո՛, — ասում եմ ես: — Ի՞նչ կա որ:

— Հենց էնպես, ոչինչ:

Վասյան քարերին ձեռք է մեկնում, շոշափում է, ծանոթանում:

— Դե՛, երեխանե՛ր, գնա՛նք:

— Ո՞ւր:

Վասյան շատ զարմացավ:

— Դեպի Ֆինլանդական կայարան:

— Ինչո՞ւ:

— Հենց կայարանից էլ կգնանք այն բոլոր փողոցներով, որտեղով անցել է այդ զրահապատը: Ուրեմն այդպես, — շարունակում է Վասյան, — կհասնենք Ֆինլանդական կայարան ու հենց հուշարձանի մոտից կսկսենք հաշվել մեր քայլերը, թե որքան ճանապարհ է անցել Լենինը զրահապատով մինչև Կշեսինսկայայի պալատը:

— Դա հո մեր տան մոտն է, — ուրախանում է մի աղջիկ: — Կշեսինսկայայի պալատը:

Վասյան մի հայացքով նայեց քարերին ու հրաման տվեց.

— Դե՛, գնացի՛նք:

— Հենց էդպես միանգամի՞ց:

— Հենց էդպես միանգամից, — ասաց Վասյան ու առաջինն ինքը քայլեց:

Մի խմբով եկանք Ֆինլանդական կայարան: Հաճույքով գնացինք հուշարձանը: Լենինը ելույթ է ունենում զրահապատի վրայից: Աշտարակը ճիշտ նման է իսկական զրահապատի աշտարակին: Հետո մեջքներս արեցինք դեպի հուշարձանը և, հաշվելով մեր քայլերը, գնացինք այն ճանապարհով, որով անցել էր զրահապատը: Վասյան՝ առջևից, իսկ մենք բոլորս՝ նրա հետևից:

Մի քիչ գնալուց հետո Վասյան կանգ առավ, հարցրեց.

— Իսկ դո՛ւք գիտե՛ք գոնե, թե ինչի մասին է խոսել այն ժամանակ Լենինը զրահապատի վրայից:

Նա ծառայում է, գիտեք, հե՛նց այստեղ,
Ձեզ մոտ, Լենինի պահակախմբում:
— Իսկ որդուդ հիմա կկանչենք, մայրի՛կ...

Իսկույն գալիս է ուղարկված մարդը
Եվ պատասխանում.
Որ գնացել է նրա զավակը երեկ վարժության,
Մի շաբաթ հետո կդառնա միայն:



Իլյիչն է նայում մորը տխրադեմ,
Որ հոգնած ու թույլ կանգնել է իր մոտ,
Եվ զրուցում է նրա հետ աշխույժ
Տղայի մասին:

Չէ՛ որ նա վաղուց չի տեսել որդուն,
Բայց նա թող երբեք չանհանգստանա.
Տղան առողջ է, վատ էլ չի ապրում,
Ունի ընկերներ, բրդյա տաք շինել,
Հագնել-կապելուն խոսք չկա անգամ:
Ներակրում են որքան կարող են,
Հիվանդությունը փախչում է հեռու...
Ափսոս, չի կարող, թե չէ մի շաբաթ
Այստեղ, պատի տակ կսպասեր մայրը,
Որ տեսներ որդուն:

— Չէ՛, հունձ է գյուղում, կգնա՛մ, ոչի՛նչ,—
Առաջվա նման զրուցում էր նա,
Կգնամ, կարծես տեսել եմ որդուս,
Շնորհակալություն, քեզ, ընկեր Լենին,
Հազա՛ր անգամ քեզ շնորհակալություն:
Եվ նա մոռացավ ուրախությունից
Գյուղացիների խնդրանքը անգամ:
Եվ փաթաթելով տագնապը սրտի՝
Հրաժեշտ ավեց
Ու բռնեց գյուղի ճամփան հեռավոր:

Եվ դիմավորեց ողջ գյուղը նրան.
— Դե, ասա, ո՛նց էր...
Ուրախությունից մոր սիրտն էր ժպտում.
— Ես հարցուփործով այնտեղ իմացա,
Թե ո՛նց է նայում Լենինը որդուս
Եվ օր ու գիշեր
Ո՛նց է մտածում տղայիս մասին:

*Ռուսերենից թարգմ. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ*

*Նկ. ՎԱԶԳԵՆ ԹԵՎԱՆՅԱՆԻ*

---

*Մենք նայում ենք միմյանց: Երկարահասակ աղջիկն ասում է.*

*— Երեք հեղափոխության մասին...*

*— Մե՛ր մասին, երեխաների՛ մասին, — ասում եմ ես:*

*— Ընդհանուր առմամբ դա այդպես է, — միտք է անում Վալյան: — Բանն որ Լենինն է, — ուրեմն երեխաների օգտին է խոսել: — Ինչ մտածելուց հետո ավելացնում է. — Լենինն ասում էր այն մասին, որ սոցիալիստական հեղափոխություն է պետք, ու էլի ասել է՝ «Ամբողջ իշխանությունը սովետներին»:*

*Մենք առաջ ենք շարժվում, ինչպես գնացել է զրահապատը: Վալյան հանկարծ կանգ է առնում, բացատրում է.*

*— Այ, այստեղ կանգնել են Կրոնշտադտի նավաստիները:*

*Իսկ ահա այստեղ՝ Պուտիլովյան բանվորները...*

*Իսկ այստեղ, երեկ, լուսարձակներ են եղել: Չէ՞ որ այդ տեղի է ունեցել գիշերը...*

*Իսկ այստեղ գետից ցուրտ քամի է փչել ու, երեկ, Լենինը դրել է իր կեպին՝ գլխարկը:*

*— Եկեք նորից հանդիպենք, — առաջարկում է Վալյան: — Գնանք Իժորյան գործարանը: Այնտեղ են շինել զրահապատը: Գտնենք հին բանվորներին, նրանք ամեն ինչ կպատմեն: Ե՛վ զրահի մասին, և՛ թե ինչպես են դիմավորել Լենինին:*

*— Եկեք հանդիպենք, — ասում է երկարահասակը.— Իսկ ե՞րբ:*

*Վալյան երկար մտածում է, ինչ-որ հաշիվներ է անում:*

*— Ամենից լավ կլինի ապրիլ ամսին, — վճռում է նա, — երբ Լենինը եկել է Ռուսաստան: Եկեք հանդիպենք ապրիլի երեքին:*

*— Եկե՛ք, — կանչում ենք բոլորս: — Դե՛, ուրեմն մինչև ապրիլի երեքը: Զրահապատի մոտ: Ուռա՛:*

Հասանք մինչև «Սանիկամուշկի» ավանակի հուշարձանը: Կանգնեցինք նրա մոտ, լռեցինք, նայեցինք իրար: Այստեղ, բրոնզե տախտակի վրա, նույնպես ազգանուններ են: Այն մարդկանց ազգանունները, որոնք մարտերում փառավորեցին ռուսական ռազմա-ծովային նավատորմը, փառավորեցին իրենց հայրենիքը:

Շարունակում ենք ճանապարհը: Վալկան հանգստացնում է ինձ.

— Ոչի՛նչ, Ալյոշկա, մենք դեռ մի բան կանենք հայրենիքի համար: Չէ՞ որ դեռ մենք փոքր ենք: Այ, կմեծանանք, ու էն ժամանակ կտեսնես:

— Ի՞նչ շատախոսներն եք, — ասում է երկարահասակ աղջիկը. — Է՛, պիտի սպասեք, մինչև որ մեծանա՞ք: Արդեն հիմա էլ ինչքան ասես օգտակար բան կարելի է անել:

— Օրինա՞կ, — հարցնում եմ ես:

— Սովորել գերազանց, — կկոցում է աչքերը երկարահասակը: — Ինչպե՞ս են քո գործերն այս հարցում:

— Ընդհանրապես՝ ոչինչ, — ասում եմ ես: Այսօր, օրինակ, բոլոր փորձությունները բաժանվեցին: Առանց մնացորդի:

— Իսկ երե՞կ:

Ես լռում եմ:

— Դե՛, էլ ի՞նչ երեկ, — օգնության է հասնում Վալկան: — Երեկ դեռ նա փոքր էր, իսկ այսօր, տես, միանգամից ինչքա՞ն բան իմացավ:

Հետևյալ օրն առավոտյան մայրս մի ծրար հանեց փոստարկղից: Նրա վրա գրված էր. «Ալյոշա Գրիբկովին»: Ես ծրարը բացեցի, այնտեղ մաքուր թերթիկ էր դրված: Ես վազեցի դեպի արդուկը: Տաքացրի, բանեցի վրան: Հայտնվեցին դարչնագույն տառեր:

«Ալյոշկա, շատ հետաքրքիր բան է ստացվում. Լենինը սովորել է գերազանց, ու բոլոր նրանք, ովքեր ստեղծել են ռուսական գրահը, նույնպես սովորել են գերազանց: Իսկ ով Լենինի արձանն է կերտել, հավանաբար նույնպես սովորել է գերազանց, և ով Ֆինլանդական կայարանն է կառուցել, և ում անունով կոչվել են Կիրովի պողոտան, նրանք բոլորը ինչ-որ բան են տվել մարդկանց: Միթե «երեքներով» սովորողը կարող է որևէ բան տալ: Նա կարող է միայն վերցնել: Ճի՞շտ է: Իսկ դու ի՞նչ ես կարծում:

ՎԱԼՅԱ»:

«Խորամանկն է», մտածեցի ես ու նստեցի նորից բաժանման փորձություններ լուծելու: Ուղղակի զարմանալի է: Մի քիչ նստեցի, ու բոլորը բաժանվեցին: Նայում եմ պատասխաններին՝ բոլորը համընկնում են:

Զանգ եմ տալիս Վալկային.

Ես բոլորը բաժանեցի: Դո՞ւ. ինչպես:

— Ես՝ նույնպես, — բացականչում է Վալկան:

Թարգմ. Հ. ԲԱԲԼՈՅԱՆ



# ՋՈԿԱՏԸ ԿԱՐԵԼԻ Է ԱՆՎԱՆԱԿՈՉԵԼ

Նա, ում մասին ես ուզում եմ պատմել, ձեր հասակակիցն է: Նրա անունն Անահիտ է, իսկ ազգանունը՝ Ավագյան: Նա սովորում է Էջմիածնի Ա. Միկոյանի անվան դպրոցում, 8-րդ դասարանում: Կոմերիտական է, գերազանցիկ:

Նրանց դասարանի կողքին է գտնվում 6-րդ «գ» դասարանը: Ուսումնական տարին նոր էր սկսվել: Ամեն անգամ, երբ դասամիջոցներին Անահիտը ընկերների հետ դուրս էր գալիս միջանցք, նա դժգոհ հետևում էր 6-րդ «գ» դասարանի տղաներին, որոնք աղմուկով դասասենյակից դուրս էին վազում, կոպտում միմյանց, հրում, գոռգոռում, քաշում աղջիկների մազերից:

«Ինչ անկարգ են», — մտածում էր Անահիտը:

Այդ դասարանից դժգոհում էին նաև ուսուցիչները.

— Վատ են սովորում, կարգապահությունն ընկած է դասարանում, ոչ մեկին չեն լսում:

Լսում էր դժգոհությունները ու տխրում Անահիտը: Մի օր էլ, նա անհամարձակ մոտեցավ ավագ ջոկատավարին և խնդրեց.

— Ես ուզում եմ 6-րդ «գ» դասարանի ջոկատավարը լինել:

— Ի՞նչ, նրանք քեզ չեն լսի, կդժվարանաս, ախր շատ անկարգ են, — պատասխանեց ընկեր Ռիման:

— Ոչինչ, կաշխատեմ, ինչ է, ինձ չե՞ք վստահում. կփորձեմ, գուցե կստացվի:

Վստահեցին Անահիտին: Նա դարձավ 6-րդ «գ» դասարանի ջոկատավարը: Բայց երկար ժամանակ դասարան մտնել չէր համարձակվում: «Ինչպե՞ս սկսել, ինչո՞վ գրավել երեխաների ուշադրությունը»: Անցնում էին օրեր, բոլորը կարծում էին, որ իրենց աշխույժ, ծիծաղկոտ Անահիտը հանկարծ դարձավ լռակյաց: Իսկ Անահիտը անընդհատ մտածում էր. «Ինչպե՞ս անել, ինչի՞ց սկսել»: Ու մի օր էլ անհամարձակ, բայց վստահ քայլերով մտավ 6-րդ «գ» դասարան:

— Երեխաներ, երեկ ես մի հետաքրքիր խաղ եմ սովորել, ուզո՞ւմ եք այսօր դասերից հետո մնանք և խաղանք, — առաջարկեց Անահիտը:

— Խաղա՛նք, խաղա՛նք, — բոլորը միաբերան համաձայնեցին:

Երեխաներն այնպե՛ս տարվեցին խաղով, որ դասերից հետո բավական երկար մնացին դպրոցի բակում: Հաջորդ օրը Անահիտը նրանց պատմեց անվանի մի սպորտսմենի մասին, որի անունը կարդացել էր «Հայաստանի ֆիզկուլտուրնիկում»: Եվ այսպես, նա ամեն օր, ամեն դասամիջոցի մտնում էր դասարան

պատմում հետաքրքիր նորություններ գիտության և տեխնիկայի աշխարհից, իրենց հասակակիցների գործերի, կարդացած գրքերի, նոր կինոֆիլմերի մասին: Երեխաները լսում էին հաճույքով, հետո սկսեցին իրենք էլ պատմել, հարցեր տալ: Անահիտը շատ էր անհանգստանում նաև դասարանի առաջադիմության համար: Չէ՞ որ միայն բարձր առաջադիմության դեպքում նրանց ջոկատը կանվանակոչեն: Այ, 7-րդ «գ» դասարանի աշակերտները ավելի կարգապահ են, իրենցից էլ լավ են սովորում: Նրանք, իրոք, արժանի են Հունան Ավետիսյանի անվան ջոկատ կոչվելու:

— Եկեք մրցենք նրանց հետ,— մի օր էլ առաջարկեց Անահիտը:

Բոլորը համաձայնեցին, նույնիսկ Հարապատը: Ինչո՞ւ նույնիսկ, որովհետև Հարապատը տարեսկզբին շատ անկարգ էր, ծույլ: Բայց հիմա... Անահիտի տված հանձնարարությունները նա բոլորից շուտ է կատարում, իսկ ինչքա՜ն լավ է արտասանում, «երկուսներն» էլ կամաց-կամաց վերացրեց, որոշել է գերազանցիկ դառնալ:

Հարապատին և մյուս վատ սովորողներին օգնելու նպատակով դասարանում ստեղծեցին առաջավորների հնգյակ:

Դասարանը փոխվել էր, վատերի քանակը պակասել: Ուսուցիչները ավելի քիչ էին դժգոհում: Անահիտը արդեն մտածում էր անդրանիկ ջոկատային հավաքույթի մասին: Նա բոլորին հանձնարարել էր կարդալ Բենիկ Սեյրանյանի «Տանը և դպրոցում» գիրքը: Բոլորն անհամբեր սպասում էին հավաքույթին: Վերջապես եկավ այդ օրը:



Դասարանը ուշադիր լսում էր Սուսաննային: Նա պատմում էր գրքի մասին, հերոսներին նմանեցնում էր իրենց դասարանի կարգապահներին և անկարգներին, օրինակներով ցույց տալիս, որ Ռավմիկի նման իրենց դասարանում էլ շատ լավ աշակերտներ կան: Իսկ Հարապատը նեղացավ Գոհարից, որ իրեն համեմատում էր Գարուշի հետ: Նա այնպես էր բարկացել, որ ուզեց ծեծել իր ընկերուհուն: Բայց Անահիտը, ընկ. Հովհաննիսյանը նրան համոզեցին, որ ինքը սխալ է, որ ավելի լավ է՝ սկսի սովորել, կատարի հանձնարարությունները և համոզի բոլորին, որ նրանք սխալվել են:

Հիմա գարունը նորից է բացվել: Գյուղերում սկսել են գարնանային աշխատանքները: Բոլորը աշխույժ աշխատում են իրենց տնամերձի վրա: Բայց Էջմիածնում կա մեկը, որ ամեն առավոտ դուրս է գալիս բակ, նայում անմշակ այգուն, աչքերը արցունքով լցնում և ինքն իրեն խոսելով մտնում տուն.

— Է՜, թե բալեքս լինեին, հիմա իմ այգին էլ կը մշակվեր, ի՞նչ անեմ, ծերացել եմ, էլ չեմ կարող:

Գանգատվում էր Շողիկ մայրիկը: Նրա երկու որդիները գնացին պատերազմ և այլևս չվերադարձան, ամուսինն էլ մահացավ: Դե ինքն էլ ծեր է, չի կարող այգին մշակել: Նրա մասին իմացավ Անահիտը, շտապեց հայտնել ջոկատում.

— Պետք է օգնել Շողիկ տատիկին, նա մենակ է, անօգնական:

Թիմուրական խումբը գործի անցավ: Ամեն օր ջոկատից երկու-երեք պիոներ գնում են Շողիկ տատիկի մոտ, օգնում նրան. ցախն են կոտրատում և դասավորում բակի մի կողմում, այգին են մշակում, տունը մաքրում, ջուր բերում, կարդում օրվա թերթերը: Հիմա արդեն մենակ չէ Շողիկ տատիկը: Նրա «թոռնիկները» ամեն օր այցելում են իրեն, հարցնում.

— Ի՞նչ կա անելու:

— Շնորհակալ եմ, Անո ջան, մի բան որ լինի կասեմ,— ուրախանում է տատիկը:

Ջոկատում այսպես բոլորը զբաղված են, միասին գնում են կինո, գալիս են Երևան՝ կրկես: Անահիտը դպրոցում առաջինը նախաձեռնեց գավառագիտական թանգարան գնալ: Այնտեղ շատ հետաքրքիր նորություններ իմացան Կոմիտասի, Ավ. Իսահակյանի, Հովհ. Հովհաննիսյանի և շատերի մասին, որոնց անմահ ստեղծագործություններից լավագույները գրվել են այն նույն դասարաններում, որտեղ սովորում են հիմա իրենք: Լսում էին և հուզվում:

— Անպայման, անպայման պետք է լավ սովորել,— որոշեց յուրաքանչյուրը:

Հիմա արդեն վատ սովորողների թիվը շատ է պակասել, իսկ գերազանցիկները 5-ն են: Դասարանում էլ ոչ մի անկարգ չկա, գործում է ջոկատի ինքնագործ խումբը: Ամեն անգամ ծնողական ժողովներից հետո նրանք ծնողների համար համերգ են տալիս: Այս բոլորից հետո արդեն Անահիտին մտահոգում է մի ուրիշ հարց՝ «Շողացեք, լենինյան աստղեր» մրցությունում առաջնություն շահելու հարցը: Բայց ջոկատը արդեն նվաճել է այդ առաջնությունը: Նրանք կարողացան բարձրացնել ջոկատի պատիվը, հավասար քայլել մյուս դասարանցիների հետ, ուղիղ նայել ընկերներին, ծնողներին ու դասատուներին:

Թող ջոկատի յուրաքանչյուր պիոներ իր ակտիվ նախաձեռնությամբ և բարձր առաջադիմությամբ ջոկատն արժանացնի անվանակոչման:

*Կ. ՍԱՐԳԱՋՅԱՆ*




ՍԱՐՄԵՆ

Ա

Դե՛, մնաք բարո՛վ,
Հայրենի լեռներ,
Եվ դուք, անխռով
Կանաչ անտառներ։

Դե՛, մնաք բարո՛վ,
Ծաղիկներ պես-պես,
Ձեր լույս համբույրով
Ճամփու դրեք մեզ։

Դե՛, մնաք բարո՛վ,
Հայրենի հանդեր,
Դուք վառ զարդերով
Շորեր եք հագել։

Ողջո՜ւյն ձեզ, ողջո՜ւյն,
Ճամփաներ անծայր,
Կանչում են, կանչում
Աստղերը պայծառ։

Բ

Գնում ենք մենք դեպի Լուսին,
Հնչում է զանգը վերջին,
Արև ինչպես հսկա փարոս
Վառվում է միշտ մեր ճամփին։

Ընկերներին, մեր հորն ու մոր՝
Մնաք բարով ենք ասում,
Թռչում են մեր նավերը նոր,
Կարծես լինենք երազում։

Անցնում ենք մենք անտակ ծովեր՝
Երկրից առած լայն թևեր,
Կապույտ ճամփով գնում ենք մենք՝
Միշտ դեպի վեր, դեպի վե՛ր։

Օ՜, ի՜նչ հրճվանք, օ՜, ի՜նչ խնդում
Ապրում ենք մենք այս պահին...
Մնաս բարո՛վ, հայրենի տուն՝
Մեր սուրբ օջախ երկրային։

Գ

Լուսի՛ն, Լուսի՛ն, ի՜նչ սառն ես դու,
Չկա ո՛չ գետ, ո՛չ աղբյուր,
Կրակ չունես դու քո սրտում,
Չունես գարուն ծաղկաբույր։



Երկրից եկել, բերել ենք քեզ
Ծիլ ու ծաղկունքը գարնան,
Դու մեր ճամփին պիտի լինես
Հավերժական մի կայան։

Դ

Լուսին-կայանը թողել ենք ետև,
Մարսի ուղին է փռվել մեր առաջ,
Գնում ենք, գնում՝ լարած թափ ու թև,
Հայրենի հողից ուժ-կրակ առած։
Նայում են, ցնծում
Աստղեր անհամար,
Ճամփա են բացում
Մեր երթի համար։

Կանչող կարոտով, երազներով վառ՝
Գնում ենք դեպի աստղային հեռուն,
Օ՜, տա՛ր մեզ, տա՛ր մեզ, խիզախ նավա-
վար,
Մեր հոգում գարնան եռանդն է եռում։
Նայում են, ցնծում
Աստղեր անհամար,
Ճամփա են բացում
Մեր երթի համար։

Ե

Երկի՛ր, դու հեռվից
Կանչում ես նորից,
Մեզ հետ ես դու միշտ,
Մեր ծնված օրից։

Ուր էլ լինենք մենք,
Քո զավակներն ենք,
Քեզ հետ չենք փոխի
Մի ողջ տիեզերք։

Մեզ կյանք ես տվել,
Տվել ես թևեր,
Որ բարձրանանք մենք՝
Աստղերից էլ վեր։

Հազա՛ր ողջույն քեզ,
Մեր մա՛յր լուսերես,
Դու անմահ փառքով
Միշտ պիտի ապրես։

Կտրում ենք հիմի
Ծովերն անհունի,
Մեզ հետ ես դու միշտ,
Երկի՛ր հայրենի։

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ



ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

## ՀԱՐՁԱԿՈՒՄ ՎԱՐՅՈՒՍԻ ՏԱՆ ՎՐԱ

Ես արթնացա կեսգիշերին։ Փողոցում աղմուկ էր։ Ծնողներս տանը չէին։ Սեղանին լապտեր էր վառվում, ու ես տեսնում էի թախտի վրա կուչ եկած Զարիկի վախեցած աչքերը։

Այս ի՞նչ աղմուկ է, — հարցրի։

Զարթնեցի՞ր, — թեթևացած շունչ քաշեց Զարիկը։

Ի՞նչ է պատահել։

Ասում են, ավազակները հարձակվել են Վարյուսի տան վրա։

Ես վեր թռա տեղից։

Մի՛ գնա, վախում եմ, — խնդրեց Զարիկը։

Բայց ոչ մի ուժ ինձ տանը պահել չէր կարող։ Մի կերպ հագա շորերս ու քիչ հետո արդեն փողոցում էի։

Վարյուսի տան առաջ հսկայական բազմություն էր հավաքվել։ Այնտեղ էին նաև միլիցիայի աշխատողները։ Բազմության կենտրոնում կանգնած էր մեր հարևան մաշակար Երեմն ու միլիցիայի ջոկատին բացատրում էր.

Ախպորս ասեմ, բոլոր տղի կնունքն էր։ Ես մի քիչ քեֆի չունեի։ Բոլոր ասում եմ՝ Սարեթ, դու՛ք քեֆ արեք, ես գնամ տուն, մի քիչ հանգստանամ, դա թե՝ ո՛նց կլինի, էրան մարդ եմ հրավիրել...

Կարճ, — խնդրեց ջոկատավարը։

Հա, մի խոսքով, ես՝ հա, դա չէ, ես՝ հա, դա՛ չէ։ Վերջը, ինչ գլուխդ ցավացնեմ, տեսա էլ չեմ դիմանում, ասեցի՝ Սարեթ, մարդ ես, հասկացի, բա որ հիվանդ չլինեի բոլոր տղի կնունքին չէի՞ մնա։ Նոր էլավել Սարեթը հասկացավ, ասեց՝ գնա, այ ախպեր, ինչ անեմ...

Ընկեր, դու՛ք ավելի կարճ չե՞ք կարող։

Հա, մի խոսքով, ես բոլոր տանից դուրս եկա։ Նրանք հրեն Ցախի մեյդանում են ապրում։ Ես դուրս եկա, մերոնք մնացին, ասեցի՝ գնամ մի քիչ պառկեմ...

Ինչ մարդ ես, տո՜։

Կա՛ց, — ասաց Երեմը, — ընկեր պետ ջան, մեկ էլ մինչև հերթով չասեմ, չեմ կարող։

Շարունակիր։

Հա, մի խոսքով, հիմա փողոցն ընկած գալիս եմ դեպի տուն։ Փողոցում մարդ-մաղաթ չկա. Գալիս եմ, հանկարծ ծնկներս ծալվում են, ասում եմ՝ մերդ չմեռնի, Երեմ, քեզ հենց էս անտեր հիվանդությունն էր պակաս։

Հետո՞։

Հետո, եկա հասա էստեղ։ Տեսնեմ Վարյուսի տանից ձայներ է գալիս։

Ի՞նչ ձայներ։

Դե ասում եմ, էլի։ Սկզբից Վարյուսի ձայնն եկավ, ասում էր. «Իզուր բան է, ասել եմ, որ ինձ մոտ չի»։ Մեկն ասաց. «Տանն իրար գլխով տվի, չկա»։ Մի ուրիշը, թե. «Արհեստանոցը նայեցի՞ր»։ Սա՛, թե. «Նայեցի»։ Հետո մեկն ասաց. «Վարյուս, վերջին անգամ եմ ասում, եթե չտաս՝ տղայիդ կսպանենք»։ Էստեղ ես գոռացի.

Էդ ո՞վ եք, հե՞յ։

Մեկ էլ Վարյուսի դուռը լացեց ու բակից՝ ոտքերի թփթփոց։

— Մարդ չտեսա՞ր։

Սկիզբը՝ 1965 թ. № № 8—12, 1966 թ. 1—3

— Չէ, փողոց դուրս չեկան։

— Հետո։

— Հետո, ձայն տվի, մարդիկ հավաքվեցին։

Սարսափելին իմացա Կարոյից, որ ինձանից շուտ էր տեղ հասել ու միշտ կողքիս կանգնած ծխում էր։ Նա ձեռքը դրեց ուսիս ու կամաց ասաց.

— Գնանք։

Մենք հեռացանք Վարդանի տնից, Կարոն ասաց.

— Վարդանի տունը ամբողջովին են արել, իրեն կապել են անկողնում, հետո, փախչելուց առաջ, դանակով խփել սրտին։

Սարսափից մազերս բիզ-բիզ էին կանգնել։ Ես մոլորվել էի։ Կարոն կարծես մի բանի մասին մտածեց, մեծ մարդ էր դարձել։

— Գնանք, — ասաց։

— Ու՞ր։

— Գնանք միլիցիայի բաժանմունք։ Հիմա գր-պանը Թուրքին էլ կսպանեն։

Ամբողջ ճանապարհին ես մտածում էի, որ եթե մենք ժամանակին հայտնած լինեինք, հիմա Վարդանը կենդանի կլիներ, ինչ անեինք, թեկուզ ձերբակալեին։

Երկհարկանի տանը բոլոր լույսերը վառվում էին։ Մենք բարձրացանք փայտե աստիճաններով։ Պատշգամբում կանգնած միլիցիոները հարցրեց.

— Ի՞նչ եք ուզում, տղաներ։

— Պետի մոտ։

— Ուղիղ պետի մոտ, — ժպտաց միլիցիոները, — մի քիչ ուշ չի լինի։

— Չէ՛, պետի մոտ, — համառ ասաց Կարոն։

Միլիցիոները ուշադիր նայեց մեզ.

— Դե, արած, գնացեք պետի մոտ։

Մի ժամ հետո մենք դուրս եկանք երկհարկանի տնից։ Մեզանից առաջ մի ամբողջ ջոկատ արդեն գնացել էր դեպի Զանգվի ձորը։

Տուն գնում էինք դեպի տուն։ Ճանապարհին Կարոն գրպանից մի ծրար հանեց։

— Էս ի՞նչ է, — հարցրի։

— Մեր նամակը, — կարդալով ասաց նա, — չեն նկատել, միջանցքի անկյունում ընկած էր։

Գիշերը սարի վրա էինք։ Քաղը չէր խաղաղվում։ Առավոտյան միլիցիոներները կապով բերեցին Թուրքին։ Նրան տուն չտարան, քանի դեռ քննություն էր կատարվում ու անկողնում պառկած էր սպանված Վարդանը։ Ցոլակի կին՝ Մարիամիկը, Թուրքին իրենց տուն տարավ։ Մենք գնացինք կառքի հետևից։



Թուրքին պառկեցրին անկողնում։ Ուշքի վրա չէր, դեմքին ու թևերին կապույտ բծեր կային։ Մարիամիկը օղիով շփում էր Թուրքի մարմինը, իսկ ես ու Կարոն անշարժ կանգնել էինք մահճակալի առաջ։

Մի՛ խփի, զառանցում էր Թուրքը, ինչի ես թևերս ու ոտքերս կապում, ես քեզ ի՞նչ եմ արել...

Մենք էլ չիմացանք, դուրս թռանք Ցոլակենց տնից

Հաջորդ օրը Վարդանին թաղում էին։ Ամբողջ թաղը, ինչ եմ ասում, ամբողջ քաղաքն էր հավաքվել։ Միայն Թուրքը չկար։ Մեր խեղճ ընկերը պառկած էր քաղաքային հիվանդանոցում...

Մինչև գերեզմանոց մարդիկ Վարդանի դագաղը տանում էին ուսերի վրա։ Արևելյան նվագախումբը տխուր եղանակներ էր նվագում։ Ես ու Կարոն գնում էինք մարդկանց խմբի մեջ։ Ես նայում էի հուղարկավորներին։ Հայրս լաց էր լինում առանց արցունքներից ամաչելու։ Լաց էր լինում մաշակար Երեմը, որ հիվանդ էր ու հուղարկավորության էր եկել գլուխը փաթաթած։ Լաց էին լինում բոլորը։ Ուրեմն բոլորը սիրում էին Վարդանին։ Հանկարծ ես հիշեցի նրա բարի ժպիտը, երբ

# ԱՅԲՈՒԲԵՆԸ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## Թ



— Թիթեռ, թիթեռ,
Ա՛յ թիթեռ,
Թաթիկիս չես
Իջել դեռ...
— Վա՛յ, Թաթուլիկ,
Խե՞լ եմ ես,
Թաթիդ իջնեմ,
Որ բռնե՞ս...

## Ծ



— Ծիրանի ծառ,
Ծիրան տուր։
— Ծիրան չունեմ,
Ծույլ Ծատուր։
— Ծիրան չունե՞ս...
Ունես, չէ՜...
— Ունեմ՝ ծույլի
Համար չէ։

ԼՈՒՍԻԿ ԲԱԹՆԱԿՅԱՆ

# Իմ փոքրիկ եղբայրը

Իմ փոքրիկ եղբորը մենք գտանք այսպես։

Հայրիկն ասաց.

— Մայրիկը գնում է փոքրիկի հետևից։

— Ի՞նչ փոքրիկ,— զարմացա ես։

Մեր փոքրիկ բալիկն ուզում է տուն գալ, բայց ճանապարհը չգիտի։

Մայրիկը գնաց։

Երևի փոքրիկին գտնելն այնքան էլ հեշտ չէր, մայրիկը գիշեր-ցերեկ փնտրում էր նրան, և մի քանի օր ես ու հայրիկը տանը մենակ էինք։

Վերջապես հեռախոսով հայտնեցին, որ մայրիկը տուն է գալու։ Հայրիկն ավտոմեքենայով գնաց նրանց հետևից։

Եկան։

Փոքրիկին ես գրկած բարձրացրի երրորդ հարկ։ Մայրիկն ու հայրիկն անվերջ անհանգստանում էին և երկուսն էլ ձեռքերը գցել ու բռնել էին։ Եթե չբռնեին էլ, միևնույն էր, ես այնպես ամուր էի բռնել, որ երբեք չէր ընկնի։

Պարզվեց, որ փոքրիկն իմ եղբայրն է։

—Ես մոտեցա, նայեցի, բայց նա ինձ բոլորովին չճանաչեց։

Նա ո՛չ խոսում էր և ո՛չ էլ ժպտում, միայն լաց էր լինում։

— Ինչո՞ւ է լալիս,— հարցնում եմ մայրիկին։

— Ուտել է ուզում։

— Ինչո՞ւ է լաց լինում։

— Քնել է ուզում...

# ԵՐԳԵՐԻ ՄԵՋ

Ջ



Ջյունը հալվեց,
Ջյունը փլվեց,
Ջրում դարձավ
Ջնծաղիկ։
Ջնծաղիկը
Ջրից ժպտաց՝
Աչքում արծաթ
Մի շաղիկ։

Տ



— Տատի տանձը
Տանեմ տուն,
Թե չէ կուտի
Գող կատուն։
— Միտքդ ասա,
Իմ ճուտիկ,
Կատուն տանձը
Ո՞նց կուտի։

Նկ. Ալ. Գրիգորյանի

9-66

— Ինչո՞ւ է լաց լինում․․․

— Տակի գլված շորերը թրջել է, ուզում է փոխել…

Վա՜յ, վա՜յ փոքրիկ Արամիկ, ամեն ինչ ասում է միայն լաց լինելով։

Եվ միայն մայրիկի հետ է խոսում, ո՛չ ինձ է ճանաչում, ո՛չ էլ հայրիկին։ Դեռ ավելին, մի անգամ մոտեցա, նայեցի և ինչ… Նա ինձ լեզու ցույց տվեց։ Եթե նա իմ եղբայրը չլիներ կամ այդքան փոքրիկ չլիներ, ես նրան ցույց կտայի…



Ես նստում եմ իմ սեղանի մոտ և ուզում եմ դաս սովորել։

Իսկ նա՝ իմ փոքրիկ եղբայրը, գոռում է, հա գոռում…

Ես պայուսակիցս հանում եմ իմ թվաբանության տետրը և ուզում եմ լուծել հանձնարարված խնդիրը, իսկ նա լալիս է, լալիս…

Ես մայրիկին ասում եմ.

— Դուք այդ փոքրիկին իզուր բերեցիք։

Իսկ մայրիկն ասում է՝ պետք է համբերել…

Եվ ես համբերում էի։

Անցնում են օրեր, հետո՝ ամիսներ։ Ես նորից մոտենում եմ իմ փոքրիկ եղբորը նայելու, և ինչ՝ նա ինձ ճանաչում է, այնպես լավ է ժպտում, այնպես լա՜վ…

Ես ճոճից կախված խաղալիքներն եմ ցույց տալիս նրան, բայց նա դրանք խլում է իմ ձեռքից, շպրտում է հատակին և նայում է ինձ, նայում է ու ծիծաղում...

Ես այնպե՜ս եմ սիրում նրան, այնպե՜ս, որ ամաչում եմ նրան նայելիս. չգիտեմ, այն ժամանակ, երբ մայրիկին ասացի՝ ինչու եք բերել այս փոքրիկին, նա քնա՞ծ էր, թե՞ արթուն...



Սոսը տատին հյուր գնաց։

Տատի աչքերն լույս եկավ, ուրախացավ, աշխարհով մեկ դարձավ։

Սոսը տատի ծաղկամանների ծաղիկները ջրեց։

Սոսը պապի կոշիկները սրբեց։

Սոսը թաղում ծանոթներ էլ շատ ուներ, վազեց դուրս, հանդիպեց Նունեին։

Բարով ես եկել, Սոս։

— Բարև, Նունե։



— Դու դպրոց գնու՞մ ես, հարցրեց Սոսը։

— Իհարկե, պատասխանեց Նունեն,— Իսկ դու՞...

— Ես էլ եմ գնում,— պատասխանեց Սոսը։

Սոսը գրպանից հանեց կավիճն ու գետնի վրա գրեց. «Մայրիկ, հայրիկ, ընկեր Համբիկ»։

Հետո կավիճը տվեց Նունեին։

Նունեն գրեց. «Մայրիկ, հայրիկ, ընկեր Վարդուհի»։

Տատը կանչեց Սոսին։

—Նունե՜, դու էլ եկ գնանք տատիս տուն։

Նունեն բռնեց Սոսի ձեռքը, ու միասին նրանք վազեցին տուն։

Սոսն ուզում էր իր դասընկերների մասին պատմել՝ կիսատ մնաց...

Նունեն ուզում էր նոր սովորած ոտանավորն անգիր ասել՝ կիսատ մնաց...

Սոսն ուզում էր ընկեր Համբիկի պատմած հեքիաթը հիշել՝ չկարողացավ...

Նունեն ուզում էր գունավոր մատիտով ծառ նկարել՝ չվերջացրեց...

Ամբողջ տունը թարմ գաթայի հոտ էր բռնել...

Սոսն ու Նունեն վազեցին խոհանոց։

Տատը վառարանից հանում էր կարմիր-կարմիր գաթաներն ու շարում սեղանին։

Լուռ էր տատը։
Լուռ էր Սոսը։
Լուռ էր Նունեն։

Սոսը նայում էր տատին, նայում էր գաթաներին ու մտածում՝ գաթաները ինչ կարմիր են, իսկ տատիկը լուռ է, լուռ...

— Տատի, հա՛նկարծ ասաց Նուն։
— Ի՞նչ է, բալա։
Տատի, ինչո՞ւ չես խոսում...
— Ի՞նչ ասեմ, բալաս...
—Ասա, Սո՛ս, վերցրու գաթա ու Նունեի հետ կեր...

Տատը ծափ տվեց ու ծիծաղեց.

— Տաք է, ա՛յ Սոս, դրա համար չեմ ասում...



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Տատն ափսեի մեջ երկու կտոր գաթա դրեց, մեկը՝ Սոսի, մեկն էլ Նունեի համար։

— Կերե՛ք,—ասաց տատը, իսկ Սոսն ու Նունեն արդեն ուտում էին...



## ՇՏԱՊ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Լաց է լինում Նունիկը,
Տրորում է աչքը թաց,
Նրա սիրուն շնիկը
Մահճակալից ընկավ ցած։
— Ի՞նչ պատահեց, շնիկ ջան,
Ո՛չ խաղում ես, ո՛չ ժպտում,
Թե՞ ուզում ես, որ հիմա
Կանչեմ շտապ օգնություն։—
Լսափողը նա վերցնում
Ու հաղորդում է արագ.
— 0 - 3, ե՛ս եմ, ե՛ս,
Իմ շնիկը վատ է, վատ...
Ավտոն չեկավ, բայց ահա
Լավանում է շնիկը,
Ու ժպտում է խորամանկ
Ուրախացած Նունիկը.
Ախր, ավտոն շնիկին
Հիվանդանոց կտաներ՝
Հեռախոսը Նունիկի
Թե խաղալիք չլիներ։

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ՌԻՎԱ-ԴԱՆՈՔՆՌԻ...

*ԿԱՐԼԵՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ*

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Աշունն ինչ-որ ներկապնակից պուտ-պուտ դեղին էր գողացել և շրջապատը ներկել գայթակղիչ երփներանգությամբ: Ծիրանի այգում, դալկացած ու ձլորված սիզախոտերի վրա երկու եղբայր, կլանված իրենց զվարճալի խաղով, մերթ ափաչափ ոսկեգույն տերևներից պսակներ էին հյուսում, մերթ հյուսքեր գործում, պատկերացնելով, թե իրենք երկարամազ ու տկկան աղջիկներ են:

— Կարե՛ն:

— Ի՞նչ:

— Ռանդո-պինդո...

Փոքր եղբայրը անասելի մի լավ բան պատկերացրեց և հաճույքից փակեց աչքերը:

— Ճիշտ է. Արմեն, Ռադնո-պիգնո:

— Հիմար, ոչ թե Ռադնո-պիգնո, այլ Ռանդո-պինդո:

Կարենը վշտացավ: Նա վիրավորվեց, որ եղբայրն այդպես կոպտորեն ուղղեց իրեն: Բայց հաջորդ պահին նա արդեն մոռացել էր վիրավորանքը, որովհետև մեծ եղբայրն ասաց.

— Կարեն, Ռանդո-պինդո...

Նա աչքերը կիսախուփ վազեց մեծ եղբոր հետևից: Նրանք տուն մտան, որն, ա՛յ, այնտեղ էր՝ այգու խորքում, և մեծն սկսեց ինչ-որ լուրջ գործ կատարել:

Քիչ անց, նա բարձրացավ բարդու կատաքը և ընտիր տեսակի երկու խաչփայտ կտրեց: Կարենը դեռ չէր հասցրել հասկանալ, թե եղբայրն ինչ է պատրաստում: Անկուսպ մի ցանկությամբ ուզում էր հարցնել, բայց նման դեպքերում Արմենը անողոքաբար կշտամբում էր և ամոթանք տալիս, դրա համար էլ նա ասաց.

— Արմեն, Ռանդո-պինդո՞...

Եղբայրը գլխով արեց: Կարենը մատները բացելով իրարից, նշան բռնեց ծառին.

— Հրաշալի է, Ռանդո-պինդո...

Նա հասկացել էր. եղբայրը սովորական պարսատիկներ էր պատրաստում, իսկ «Ռանդո-պինդոն» նրա գյուտն էր: Տղան սիրում էր այդպիսի ինքնաշեն բառերով խոսել և մեծ հաճույք էր ստանում դրանից:

Քիչ անց, նրանք համառությամբ աշխատում էին իրենց պարսատիկներով ճնճղուկներ սպանել...

* * *

Վերջալույսը ֆանտաստիկ գեղեցկությամբ էր ներկել այգին: Նրա եկրով ձգված խճուղին վերևում՝ դարավանդի վրա, ծունկ էր տալիս և ձգվում խորհրդավոր աշխարհներ: Այգուց հոսող ջուրը քանդել էր փոքրիկ պատնեշը և վճիտ անհոգությամբ վազում էր ասֆալտի վրայով: Եղբայրները գյուղից նոր էին վերադարձել և վազքով հասել էին մինչև կամուրջն ու մեծ եղբայրն ասել էր.

— Ճլմտի տո՛ր-տո՛ր...

Կարենը նորից չէր հասկացել և նորից խուսափել էր հարցնել: Ամեն անգամ, երբ մեքենա էր անցնում խճուղով, անվադողերը թրջվում էին մ՜ թացը թկաչափերով ընդարձակվում էր խճուղու եր-



Մի օր աղվեսը ճապաստակին ասաց.

— Եղբայր շլդիկ, արի միասին գնանք որսի.

— Ես ուտելու պաշար շատ ունեմ,— պատասխանեց ճապաստակը:



Աղվեսը ոտքի տակ տվեց սարերն ու անտառները և առատ որս ունեցավ: Ուրախությանը չափ ու սահման չկար:

կարությամբ: Արմենն ուրախ-ուրախ ասում էր.

— Ճլմտի տոր-տոր, մե՛կ...

— Ճլմտի տոր-տոր, երկու...—հաշվում էր, թե ինչքան է ավելանում ամֆալտի թացը:

Կարենն այս անգամ անմիջապես հասկացավ եղբոր գյուտը և սկսեց ինքն էլ ընդօրինակել նրան.

— Ճլմտի տոր-տոր, երեք...

Հաջորդն արդեն Արմենն էր.

— Ճլմտի տոր-տոր, չորս...

Ես միշտ նկատում էի 7—8 տարեկան այդ չարաճճի եղբայրներին, որոնք խաղում էին այդպես երջանիկ և հավանաբար չէին էլ մտածում, որ գտնվում են աշխարհից կտրված ծիրանի այդ այգում ու օրերն էլ անցնում էին աննկատելի և հետաքրքիր:



* * *

Մի անգամ մեքենայիս ջուրը վերջացավ այդտեղ: Կանգնեցի և նրանց կանչեցի ինձ մոտ: Նրանք վազքով եկան, ու նրանցից մեծն ասաց.

— Ռիվա-դանո, քեռի:

Ես չհասկացա: Փոքր եղբայրն ասաց, որ մեծը շատ է սիրում այնպիսի բառերով խոսել, որոնց իմաստն ինքը նույնիսկ չգիտի:

Դույլ խնդրեցի և, երբ ջուրը լցնելուց հետո վերադարձնում էի, նրանց ասացի, որ լավ չէ խճուղու վրա խաղալ, թող նրանք այգում, ծառերի տակ զբաղվեն իրենց այդ հրաշալի գործով...

Եվ այսպես, մենք ծանոթացանք ու ամեն անգամ, երբ այդտեղից էի անցնում, ձեռքի թափահարումով բարևում էի և լսում նրանց «Ռիվա-դանո» կանչը:

Մի ժամանակ այլևս չտեսա նրանց: Ուղիղ վեց օր տղաները չէին երևում, և ես մտածեցի, որ այգեպանն անպայման թոռներին գյուղ է ուղարկել:

Յոթերորդ օրը մեր պարկի վարորդներից մեկը կարմացած ու տարակուսած պատմեց, որ այգու մոտով անցնելիս, քարով խփել, փշրել են մեքենայի դիտապակին: Հետո հայտնվեց մի այլ վարորդ, որի հետ էլ նույն դժբախտությունն էր պատահել:

Ես այդ պատմությանը նշանակություն չէի տա, եթե հաջորդ օրը նույնը չկատարվեր ինձ հետ: Առանց դժվարության հասկացա, որ այդ ինձ ծանոթ եղբայրներն են, որոնք իրենց պարսատիկներով փշրելով մեքենաների դիտապակիները, հավանաբար բավականություն են ստանում:

Խիստ բարկացա և որոշեցի ձգել նրանց ականջները: Առանց երկմտելու շտապ այգի մտա,



Իրիկնադեմին շլդիկը բարձրացավ կոճղի վրա և տեսավ, որ աղվեսը բարձր-բարձր երգելով գալիս է:



Նապաստակը սուտմեռուկի տվեց: Աղվեսը շլդիկին էլ կգցեր իր պարկը, բայց մտածեց, որ հոտած կլինի:



հույս ունենալով, որ անպայման կտեսնեմ նրանց:

Տղաները, երևի, նկատելով ինձ, փախան: Նըրանցից փոքրիկին տեսա ես և վազեցի հետևից: Տղան մի կերպ ուզում էր խույս տալ, բայց ես բըռնեցի նրան և կոպտորեն բերելով մեքենայի մոտ, ցույց տվեցի, թե ինչ են արել:

Տղան լուրջ էր և համառորեն լռում էր: Ուղևորներից մեկը սպառնաց, իսկ ես ձգեցի ականջը և ասացի, որ հիմա միլիցիայի բաժանմունք կտանեմ:

Նա շարունակում էր լռել և գունատ էր: Ես ավելի բարկացա և, երբ ձեռքս բարձրացրի ապտակելու, ուղևորներից մի կին իջնելով մեքենայից, ճչաց անսպասելի.

— Մի՛ ապտակեք...

Ես կասեցրի հարվածը և ձեռքս մնաց օդում կախված: Կինն առաջացավ.

— Մեկ շաբաթ առաջ սրա եղբայրը մեքենայի տակ ընկավ... հավանաբար...

Ես անակնկալի եկա և նայեցի տղային: Նա սկսել էր ինչ-որ... նիհարած էր, աչքերը փոս ընկած, որոնց խորքում արցունքներ կային: Ծնոտը ջղաձգորեն սեղմված էր...

Լուռ ու անխոս թողեցի նրան ու շտապ նստեցի մեքենա:

Մենք ցնցված էինք, իսկ տղան ամենևին էլ փորձ չարեց փախչելու, պարանոցից կախված էր պարսատիկը:

— Ասում էի, չէ՛, խճուղու վրա մի՛ խաղացեք:— Այս խոսքերն հազիվ կարողացա արտասանել ես, ու աչքերս լցվեցին: Տղան նկատեց այդ և, երբ մեր մեքենան սկսեց շարժվել, նա տխուր ու ցածրաձայն ասաց.

— Ռիվա-դանո, քեռի...

Եվ ձեռքում պահած քարը մի կողմ նետեց:



Շլդիկը նորից կտրեց աղվեսի ճանապարհը:
— Էս էլ մի ուրիշ Շլդիկ և ինչքան էլ շաղլիկն է:



— Պարկիս մեջ երկուսին տեղ կլինի:
Հրացանն ու պարկը նա ներքև դրեց և ետ դարձավ, որ նախ մյուս նապաստակին բերի:

# Ի՞նչ զարմանալու բան կա



ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Աչիկը տուն մտնելուն պես աչքը գցեց իր ամենասիրելի մուկիկի կողմը և սարսափից քարացավ. մուկիկի պոչը չկար: Նա մոտ վազեց, աջ ու ձախ շուռ տվեց, նայեց բոլոր կողմերից. պոչիկը չկար ու չկար:

Ի՞նչ կարող էր պատահել:

Հանկարծ Աչիկին թվաց, որ պոչի տեղում ատամների հետքեր են երևում... Հա՜, կա-չկա, կերել են պոչը: Բայց ո՞վ:

Գուցե գա՞յլը: Բայց գայլը հանգիստ պառկած էր խշուկի կողքին: Ուստի լիներ՝ խշուկի պոչը կուտեր: Արջու՞կը գուցե: Չէ, նա էլ շատ անմեղ տեսք ունի: Ու հանկարծ Աչիկը նկատեց անկյունում պպզած թավշյա փիսիկին: Ուլունքներից պատրաստված նրա աչքերն այնպես էին պլպլում, դեմքն այնպիսի մի խորամանկ արտահայտություն ուներ, որ Աչիկը հաստատ համոզվեց. այդ նա է կերել մուկիկի պոչը: Բարկացած Աչիկը բռնեց փիսիկին, սկսեց ծեծել ու հետո էլ լաց լինել:

Ինչու՞ ես ծեծում, զարմացավ մայրիկը:

— Կերել է մուկիկիս պոչը, — հեկեկալով ասաց Աչիկը:

— Մի՞թե խաղալիք փիսիկը կարող է ուտել, ծիծաղեց մայրիկը:

Ինչպե՞ս չես հասկանում, մայրիկ. եթե իսկական լիներ, ապա իսկական մուկ կուտեր: Խաղալիք փիսոն կերել է խաղալիք մուկիկի պոչը: Ի՞նչ զարմանալու բան կա:



Ձնեց ու ավելոր գնաց. Նապաստակը շալա-
կեց ծանր պարկը, տարավ իր տնակը և բացրեց:
— Ինչ է, ուս չկա՞ր, ավելս եղբայր:



— Ուս կար, բայց խելք չկար գլխումս:
— Գիտենայի՝ մի քիչ իմ խելքից կտայի:

# ՈՐԻ ԱՆՈՒՆԸ ՆՈՒՆԻԿԸ ՉԳԻՏԵՐ

ԱՀԱՐՈՆՅԱՆ ՋԵՄՖԻՐԱ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Նունիկն ու Սարիկն այսօր այնքան շատ խաղացին, որ քիչ էր մնում դասից ուշանան: Հետո էլ ավտոբուսն էր հակառակի պես ուշանում։

— Արի, մի քիչ էլ ձնագնդի խաղանք, մինչև ավտոբուսը գա,— առաջարկեց Սարիկը։

— Չէ, ի՞նչ ես ասում, մայրիկն առանց այդ էլ բարկացած է,— կամացուկ շշնջաց Նունիկն ու զգույշ նայեց մի փոքր հեռու կանգնած Սարիկի մայրիկին։

Բայց Սարիկը չլսեց նրան, ազատ ձեռքով որքան կարող էր ձյուն վերցրեց և խփեց Նունիկի երեսին։ Դե դա ի՞նչ խփել էր։ Ձյունն այնքան փխրուն էր, որ ուղղակի շաղ եկավ նրա դեմքին և սպիտակ ծաղիկների պես թափվեց ուսերին: Նա միշտ այդպես էր խփում Նունիկին, առանց ձյունն ամրացնելու, փափո՜ւկ, փափո՜ւկ, որ չցավեցնի...

Վերջապես ավտոբուսը եկավ։ Սարիկի մայրիկը տղայի ձեռքից վերցրեց պայուսակն ու շտապեցրեց նրանց։ Նա էր միշտ երեխաներին դպրոց ուղեկցում, որովհետև Նունիկի մայրիկն աշխատում էր։

Հաջորդ կանգառում ավտոբուս մտավ սպիտակամորուս մի պապիկ, իսկը Ձմեռ պապի, ձեռնափայտն էլ ձեռքին։ Միայն



թե աչքերին ակնոց ուներ։ Նա բարձրացավ ու հենց Ձմեռ պապի պես էլ ժպտալով նայեց երեխաներին, կարծես վաղուց ծանոթ լիներ նրանց։ Նունիկն էլ Սարիկին նայեց, մտածելով, որ նրան ավելի հարմար է վեր կենալ, ծայրում է նստած: Բայց Սարիկը տեղից չշարժվեց էլ, ու Նունիկն ինքը իր տեղը զիջեց պապիկին:

Ավտոբուսն այնքան լիքն էր մարդկանցով, որ կանգնելու տեղ չկար, իսկ այդ Սարիկը չմտածեց նույնիսկ Նունիկի պայուսակը վերցնել։ Նունիկն իր մտքում ուզեց բարկանալ, բայց զգաց, որ պապիկն իրեն է նայում ու, թեև ակնոց կար աչքերին, աղջիկը տեսավ, որ նա շատ բարի հայացք ունի և կարծես ասում էր՝ դե, պետք չէ բարկանալ...

Ավտոբուսը նորից կանգնեց, ու մարդիկ սկսեցին իրար հրելով բարձրանալ։ Եվ ինչո՞ւ էին բոլորն առջևի դռնից բարձրանում: Նունիկը՝ ծանր պայուսակը ձեռքին հազիվ էր կանգնում, իսկ այդ Սարիկը...

Բոլորից հետո բարձրացավ մի տատիկ՝ կաթի շշերով ցանցը ձեռքին։ Նա հազիվ կարողացավ ավտոբուսի երկու աստիճանը բարձրանալ ու հոգնած նայեց Սարիկին։ Նունիկն էլ նայեց Սարիկին։ Իսկ Սարիկը. մի՞թե նա հիմա էլ չի վեր կենա տեղից։ Ոչ, նա մնաց նստած։

— Սարի՛կ,— զարմացած ու վշտացած քաշեց նրա թևից Նունիկը։

— Ի՞նչ, Նուն...

Նունիկը կշտամբանքով լի հայացքով նայեց նրան, հետո՝ տատիկին, հետո՝ նորից նրան, բայց Սարիկը ոչինչ չհասկացավ կամ ձևացրեց, թե չի հասկանում։ Աղջիկն այս անգամ արդեն չկարողացավ չբարկանալ ու, խռոված, երեսը շրջեց տղայից։



# ԻՄ ՇՆԻԿԸ ՀԱՄԱՐՁԱԿ

ՍԻՐՎԱՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

Մեր մեծ բակում
Ընդարձակ
Իմ շնիկը
Համարձակ
Գիշեր-ցերեկ
Միշտ արթուն
Պահպանում է
Դուռ ու տուն:
Լուսնի վրա հաչում է,
Հավի վրա հաչում է,
Հորթի վրա
Գառան վրա հաչում է,
Իսկ գայլի ձայն լսելիս,
Սուր ժանիքներ տեսնելիս,
Իմ շնիկը կլանչում,
Պոչը քաշում փախչում է:

Նկ. ԱԴԱ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

## ԾԱՂՐԱԾՈՒ ՏԻԿՆԻԿԸ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Տիկնիկ ունեմ, ծաղրածու է,
Քիթը հավի ներկած ձու է,
Հագնում է նա փքված մի շոր,
Կոշիկները՝ խոշոր-խոշոր։
Երբ որ մեկ-մեկ ես տխրում եմ,
Նայում նրան ծիծաղում եմ։

## ԾՈՎԱՍՏՂ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Տարօրինակ աստղ է սա,
Շատ զարմացա, երբ տեսա.
Ա՞ստղն էլ հանկարծ ծով ընկնի,
Դառնա ծովի կենդանի։
Տեսեք, խորունկ խավարում
Կարմիր լապտեր է վառում...
Դեպի լույսը մի՛ լողա,
Ձկնիկ, անգետ երեխա,
Փախիր, ափսոս ես, ափսոս,
Աստղ չէ նա, այլ՝ ձկնորս։

Ահա, թե ինչպիսին է եղել Սաբիկը։

Տատիկն այս ու այն կողմ էր ընկնում ուժգին ցնցումներից ու մարդկանց հրմըշտոցից։ Կաթով լի շշերը չխչխկում էին բարձրաձայն ու կարծես ճչում. «Վե՛ր կաց, Սաբիկ, տեղդ տուր տատիկին, տես նա ինչպես հոգնած է»։ Բայց Սաբիկը այդպես էլ ոչինչ չհասկացավ կամ ձևացրեց, թե չի հասկանում և մինչև վերջ էլ մնաց նստած։

Դե, ինչպե՞ս չբարկանար Նունիկը։ «Դու վատն ես, Սաբիկ, դու բոլորովին էլ լավը չես»,—ճչաց նա իր մտքում։ Հետո, դարձյալ մտքում, նեղացած ու ափսոսանքով ասաց. «Իսկ ես չգիտեի, որ դու այդպիսին ես։ Ես այլես ընկերություն չեմ անի քեզ հետ... էլ չեմ սիրի քեզ...»

Ու բարկության հետ միասին, մի ուրիշ բան էլ զգաց Նունիկը, որի անունը դեռ չգիտեր, բայց որի պատճառով քիչ էր մնում լաց լիներ...



# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԼՈՃԸ

Փղերը լողանալ էին ուզում։ Թրոթին կնճիթով վեր բարձրացրեց գույնզգույն ջրագնդակը և կռնչաց.

— Բամբուլի՛նա, արի գնանք տեսնենք որտե՞ղ ջուր կա։

Եվ փղերը քայլեցին դեպի կենդանաբանական այգու խորքը։

Վաղ առավոտ էր։ Այգում ոչ մի երեխա չէր երևում. Նրանք քնից դեռ չէին արթնացել։ Մինչև երեխաները նորից կենդանաբանական այգի գային, մի երկու ժամ կանցներ։ Այդքանն էլ փղերին բավական էր։



Շուտով նրանք հանդիպեցին մի լճակի, որտեղ լող էին տալիս փոքրիկ բադերը։ Թրոթին չհամբերեց։ Իր գերանանման ոտքերով մտավ լճակը և իսկույն պառկեց։ Ջուրը ճողփելով դուրս թափվեց ափերից։

— Կը՛ռ-կը՛ռ-կը՜ռ,— բարկացան բադիկները,— Թրոթի, դո՞ւրս կորիր մեր լճակից։ Կը՛ռ-կը՛ռ-կը՜ռ։ Շու՛տ, դու՜րս կորիր։

Նրանք իրենց տափակ կտուցներով սկսեցին ծեծել Թրոթիին։ Ինչու՞։ Որովհետև այդ լճակը շատ էր փոքր մի այնպիսի աժդահա՛ փղի համար, ինչպիսին Թրոթին էր։ Բայց չէ՞ որ նա մենակ չէր։ Բամբուլինան էլ էր ուզում լողանալ։

— Ափսո՜ս,— ասաց Թրոթին և կնճիթով մի քիչ ջուր փչեց իր վրա։

Մեր փղերը շարունակեցին իրենց ճանապարհը։ Մանկական լողավազանում ոչ մի երեխա չկար։ Վճիտ ջրի մեջ արտացոլվել էր նորածագ արևը։

Այս անգամ էլ Բամբուլինան ուզեց առաջինն ինքը լողանալ։ Նա կնճիթը կախեց ավազանի մեջ և հենց այն է ուզում էր ընկնել ջուրը, երբ վրա հասավ պահակը։

— Սպասի՛ր, սպասի՛ր,— գոռաց նա,— այս լողարանը միայն երեխաների համար է։ Նույնիսկ նրանց հայրիկներն ու մայրիկները ոչ մի անգամ չեն լո-



ղացել այստեղ, ուր մնաց, որ փղերը լողանան։

Խեղճ փղերը տխուր իրար նայեցին և շարունակեցին առաջ գնալ։ Քիչ հետո նրանք անցնում էին դեղձանիկների, թութակների, սոխակների և մյուս թռչնակների մոտով։

— Տեսնու՞մ ես, Թրոթի,— ասաց Բամբուլինան,— այս փոքրիկներն էլ իրենց համար լողարան ունեն։

Փղերը կարոտով նայեցին վանդակներում լողացող թռչնակներին և գնացին սպիտակ արջուկների մոտ։

— Հե՜յ,— գոչեց Թրոթին և իր գույնզգույն գնդակը նետեց լողացող արջուկների կողմը,— թույլ կտա՞ք մի քիչ լողանանք ձեզ հետ։

Քոթոթներից մեկը բռնեց գնդակը, կըրկին ետ նետեց և ամբողջ մարմինը շարժեց այս ու այն կողմ։

— Ո՛չ, ո՛չ,— մրթմրթաց նա,— արջ հայրիկը և հատկապես արջ պապիկը շատ են բարկանում, երբ օտար գազաններ են գալիս այստեղ։ Շուտ հեռացե՛ք, քանի չեն եկել. նրանք ձեզ կկծեն։

Թրոթին ու Բամբուլինան տխուր-տըրտում հեռացան սպիտակ արջուկների մոտից։

— Այո, իմ սիրելի Թրոթի,— հառաչեց Բամբուլինան,— բոլոր գազաններն ու







սկսեցին ճոճվել։ Բայց դրանից նրանք ավելի տխրեցին։

Հանկարծ նրանց մոտ հայտնվեց անտեսանելի բարի կախարդը։ Նա թափահարեց իր հրաշագործ գավազանը և մրմնջաց ինչ-որ կախարդական խոսքեր.

— Ա՛լա-բա՛լա-նի՛ցա,

Ջե՛մի-բա՛բա-նի՛ցա…

Ասաց թե չէ՝ ջուրը կլթկլթալով ու չփչփալով թափվեց Թրոթիի գլխին։

Մինչ փղերը ուշքի կգային, թե ինչ է կատարվում, լիճը պատրաստ էր։

Ահա Թրոթին ու Բամբոլինան ուրախ-ուրախ լող են տալիս սառը ջրում։ Նրանք իրար են նետում գույնզգույն գնդակը, և նրանց հրճվանքին չափ ու սահման չկա։ Բարի կախարդը նույնպես զովանալ է ուզում։ Նա հանում է իր կոշիկներն ու գուլպաները և բոբիկ ոտքերով մտնում ջուրը։ Հետո նա պետք է կախարդական ուժով կրկին վերացնի այդ լիճը, որովհետև շուտով գալու են երեխաները, և այգու դարպասները պետք է բաց լինեն նրանց առաջ։ Իսկ փղերը պետք է կանգնեն իրենց ցանկապատի հետևը և կնճիթների շարժումով պատասխանեն երեխաների ողջույնին։

*Գերմաներենից փոխադրեց՝*

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

թռչուններն իրենց համար լիճ կամ լողարան ունեն։ Միայն մենք ենք, որ պետք է քրտնենք մեր հաստ կաշիների տակ։

Հետո նրանք գնացին խաղերի հրապարակը։ Թրոթին նստեց ճոճափայտի մի ծայրին, իսկ Բամբոլինան՝ մյուս, ու

# ՑՐՏԱԾ ԾԻՏԻԿԸ



ՍԵՐՈ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ

Ինչ լա՜վ է, եկար, արի, արի ներս.
Ես քո հին ծանոթ Սուսիկն եմ բարի։
Արի, հենց հիմա ես հատիկ տամ քեզ.
Ասա, ի՞նչ կուզես ցորե՞ն, թե՞ գարի։
Դրսում ձմեռ է, բուքն է սաստկացել
Ու ճերմակել են ճամփաները փակ,
Լավ է, մեր հասցեն դու չես մոռացել,
Եկել գտել ես, իմ սիրուն թռչնակ։



# ՀԱՍՄԻԿՆ ՈՒ ԹԽՍԿԱՆԸ

ՍՈՒՔԻԱՍՅԱՆ ՔՆԱՐԻԿ

*Մի պտղունց ալյուր,*
*Երկու գդալ ջուր,*
*Հասմիկը եփեց*
*Հավին կերակուր։*
*Եփեց ու տաք-տաք*
*Հավի մոտ տարավ,*
*Իսկ հավը հպարտ՝*
*— Սա ի՞նչ է,— ասավ,*

*Դու ինձ այսպե՞ս ես*
*Հյուրասիրելու։*
*Չէ՞ որ քեզ համար*
*Ձուտ եմ հանելու։*
*Հարկավոր չէ ինձ*
*Եփոթ կամ ապուր,*
*Գնա և խաշած*
*Գարի բեր մի բուռ։*

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՆԱՆՈՒՇՅԱՆԻ



Տրվում է անվճար՝
«Պիոներների» չորրորդ համարի հետ



է խոստովանել, որ նախապես համաձայն են առաջինը չլինելու հետ: Փոքր հաղթանակով բավարարվելը նշանակում է այլևս ոչ մի ձգտում չունենալ...

Հենց այդ պահին, հանկարծ բոլորը լսեցին մի թույլ ծվծվան ձայն: Դա կրիաների առաջնորդն էր, որ գլուխը բարձր պահած, հայտարարեց, թե ինքը պատրաստ է եղջերուի հետ մրցման մեջ մտնել: Մի ակնթարթ լռություն տիրեց, հետո գազանները նստեցին հետևի թաթերի վրա և դունչները դեպի երկինք մեկնեցին: Նրանք այնպես էին ծիծաղում, որ ծառերի տերևները դողում էին: Միայն կրիաների առաջնորդն էր լուրջ, և արքան գրեց նրա անունը:

Գազանները հուզմունքով սպասում էին նշանակված օրվան: «Դա հազվադեպ մրցություն է,—ասում էին նրանք,—շատ հետաքրքիր կլինի»:

Այդ ընթացքում կրիաների առաջնորդը կանչեց իր ընկերներին ու ասաց.

— Ոչ թե ես մենակ, այլ բոլորս միասին պիտի հաղթենք այս մրցույթում: Հրաժարվել պայքարելուց՝ ամոթ է, եղջերուն չափազանց ինքնավստահ է, իսկ դա ճակատագրական հիվանդություն է: Ես գիտեմ, թե նա ինչպես է իրեն պահում մրցման ժամանակ: Նա կանգնում խոտ է ուտում, կարող է շատախոսել, եթե ճանապարհին մեկնումեկը հանդիպի, նա կարող է նույնիսկ մի քիչ քնել ճանապարհին և, այնուամենայնիվ, նա միշտ հաղթել է: Մենք գիտենք նրա թուլությունները, և դա հաղթանակ կբերի մեզ: Մենք՝ կրիաներս շատ ենք իրար նման: Դե, ուրեմն, ուշադիր լսեք: Ես կթաքնվեմ բացատի վերջում, մրցավարտի տեղից ոչ հեռու: Իսկ դուք ամբողջ ճանապարհի երկայնքով, իրարից ոչ շատ հեռու, թփերի տակ կթաքնվեք: Մեզանից մեկը կսկսի վազքը եղջերուի հետ: Մրցավարտի տեղից մոտ մեկ մղոն հեռավորության վրա, ինչպես միշտ, եղջերուն կցանկանա մի քիչ քնել, որպեսզի ուժ հավաքի և մրցումն ավարտի առավոտվա պես թարմ ու կայտառ վիճակում: Նա կմտածի, որ ես շատ եմ ետ մնացել և որ ինքը՝ եղջերուն, արքան ու բոլոր հանդիսատեսները հարկադրված կլինեն շատ երկար սպասել, մինչև որ ես փոշու մեջ կորած, քերծված թաթերով կհայտնվեմ խղճուկ մրցանակս ստանալու: Բայց, ընկերներ, հավատացեք, որ ես նրանց շատ չեմ սպասեցնի:—Եվ կրիաների առաջնորդը ժպտաց:

Գաղտնի խորհրդից հետո, կրիաները ուրախությունից երկար ժամանակ պարում էին կանաչ, փափուկ խոտերի մեջ:

Եվ ահա եկավ մրցության օրը: Մեծ բազմություն հավաքվեց: Չէ՞ որ գազանները սիրում են ծիծաղել և հանուն դրա ուր ասես պատրաստ են գնալու... Բոլորը հիացած էին, երբ եղջերուն, հենց երկու ցատկից հետո կրիայից շատ առաջ անցավ և քնքուշ ծաղրանքով մկկաց. «Ցը՜-տե՜-սո՜ւ-թյո՜ւն»: Ու տեսողությունից կորավ:

Շուտով եղջերուն հոգնություն զգաց և կարգադրեց իր արագավազ ոտքերին, որ կրճատեն ավելորդ արագությունը և իրեն տանեն այնտեղ, որտեղ կանաչ ու դալար խոտ կա:

Նախաճաշելուց հետո եղջերուն վերադարձավ արահետ և առանց շտապելու սկսեց վազել հովիտն ի վար: Նա ուզում էր իմանալ, արդյոք կրիան անցե՞լ էր այդքան ճանապարհը, և կարծում էր, որ անցած կլիներ: Այդ դեպքում ինքը նորից առաջ կանցներ կրիայից և կընդգծեր առավելությունը: Թեպետ այդ



մրցության ժամանակ այդ առավելությունը հազիվ թե պետք լիներ: «Ձանձրալի մրցում»,— մտածեց եղջերուն ու հենց այդ րոպեին առջևում նկատեց կրիային: Եղջերուն քմծիծաղ տվեց. «Այս ի՜նչ անճարակ կենդանի է, թռչկոտում է շարունակ: Մի քայլ չարած՝

թռչկոտում է»: Եղջերուն ծիծաղեց և կճղակով այնպես թափ տվեց, որ փոշին ուղղակի կուրացրեց կրիային, ու անհայտացավ: Իսկ կրիան սողաց դեպի մոտակա թփուտը, կանաչ տերևների վրա շողացող ցողով լվացվելու:

Եղջերուն գալար շիվեր էր ծամում, շատախոսում էր յուրաքանչյուր հանդիպողի հետ և, փոշու ամպ բարձրացնելով, նորից առաջ էր անցնում կրիայից: Նա հրճվանքով էր մտածում այն մասին, թե որքան կարմրած ու բորբոքված կլինեն կրիայի աչքերը, երբ նա սողեսող կգա իր ողորմելի մրցանակը ստանալու:

Վերջապես եղջերուն որոշում է մի քիչ քնել: Նա մրցավազքի վայրից ոչ շատ մոտ էր և ոչ էլ շատ հեռու: Բայց շատ քնեց, մի քիչ ավել, քան կարելի էր…

Առյուծ արքան և բոլոր գազանները աչք չէին կտրում կանաչ արահետից, որտեղից րոպե առ րոպե սպասում էին եղջերուի երևալուն, և ապուշ կտրեցին, երբ տեսան, կարճ ու ծուռտիկ թաթերի վրա աշխուժորեն թռչկոտող կրիային:

Բայց և այնպես նրանք ծիծաղեցին, մտածելով, որ եղջերուն որոշել է զվարճացնել իրենց: Վերջին պահին մեկ ցատկով կանցնի կրիայից: Օ՜հ, որքան կոխարի կրիան:

Մինչ այդ կրիան մոտենում էր, և բոլորի աչքի առաջ նա անցավ վերջնագիծը:

Արքան երախը բացեց և այնպես մռնչաց, որ ծառերն անգամ դողացին: Եվ առյուծի մռնչյունը արթնացրեց եղջերուին:

«Այս ի՞նչ է,— բացականչեց նա:— Որո՞տ: Ես պետք է առաջ անցնեմ կրիայից»:

Եղջերուն արագ վազքով անցավ մնացած ճանապարհը: Ժպտալով հանդիսականներին, նա մտածում էր, թե որքան լավ ժամանակ անցկացրեց և այնուամենայնիվ կարողացավ կրիայից առաջ անցնել: Նա ժպտում և թափահարում էր պոչիկը: Եվ ահա այստեղ նա իմացավ դառն իրողությունը:



Եղջերուն ուշաթափվեց: Փիղը իր կնճիթով սառը ջուր լցրեց վրան և ուշքի բերեց: Սակայն հիշելով իր խայտառակությունը, եղջերուն նորից ուշաթափվեց: Այդ ժամանակ փիղը բարձրացրեց նրան և մտցրեց լճակի մեջ:



Մի քանի րոպեից հետո, երբ արքան մրցանակ և մեդալ էր հանձնում կրիային, փիղը զգուշության համար մեկ անգամ էլ ջրով ցողվացրեց եղջերուին: Այդ բոլորը շատ էր զվարճալի, և գազանները հազիվ էին ծիծաղները զսպում:

Դժվար է ասել, թե որևէ բան հասկանում էր եղջերուն, երբ արքան նրա կրծքին մեդալ կախեց երկրորդ տեղի համար:

Այդ գիշեր կրիաների ամբողջ ցեղը ցնծության մեջ էր: Լուսնի լույսի տակ նրանք պարում էին հենց այն նույն բացատում, որտեղ առավոտյան քնել էր եղջերուն: Իսկ եղջերուն ոչ մի վայրկյան աչք չփակեց:

Ահա հենց այդ ժամանակվանից եղջերուն դարձավ հեզ ու ամաչկոտ: Իսկ կրիան մինչև այսօր էլ գլուխը բարձր է պահում:

*Ռուս. թարգմ. ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆԻ*

# ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԽԵԼՔ



(Սերբ-խորվաթական հեքիաթ)

Մի ձկնորս ուներ յոթ տղա: Նրանցից ավագը իր եղբայրներից տարբերվում էր բացառիկ խելացիությամբ և նախանձելի ճարպկությամբ: Մի անգամ ձկնորսին հաջողվեց մի մեծ ձուկ որսալ: Ավագ որդին տեսնելով այդ, խնդրեց հորը, որպեսզի վերջինս թույլ տա նրան ծախելու ձուկը: Հայրը համաձայնեց, ասելով.

— Միայն թե տասը գրոշից պակաս չվաճառես:

— Լա՛վ,— պատասխանեց որդին և ուղևորվեց դեպի շուկա:

Շուկայի ճանապարհին տղային հանդիպողները հարցնում էին ձկան արժեքը: Իսկ նա բոլորին պատասխանում էր.

— Որքան արժե, այնքան էլ վճարեցեք:

Ոչ ոք չգիտեր, թե ինչ պատասխաներ տղային: Բարեբախտաբար ճամփին նրան հանդիպեց քաղաքի ամենահարուստը: Տեսնելով տղայի ձեռքից կախված ձուկը՝ նա հարցրեց.

— Քանի՞սի՞ ես վաճառում ձուկդ:

— Որքան արժե, այնքան էլ վճարեցեք:

Հարուստը տղային բերեց իր տուն, ձուկը գնեց և դիմացը մի ոսկե դրամ տվեց: Տղան վերադարձավ տուն և դրամը հանձնեց հորը: Երկարամյա ձկնորսը տեսնելով ոսկե դրամը, խիստ զարմացավ: Հաջորդ օրը դարձյալ ծերուկը մեծ ձուկ որսաց: Տղան դարձյալ ձուկը տարավ և վաճառեց հարուստին: Հարուստն այս անգամ էլ ոսկե դրամ տվեց տղային և հետը զրուցելով, տեսավ, որ նա շատ խելացի է: Որոշեց որդեգրել նրան: Երբ տղան տուն վերադարձավ, ծերուկը մտածեց՝ չլինի՞ որդին ինչ-որ տեղից գողանում է այդ դրամը, և որոշեց ստուգել: Տղան հորը բերեց հարուստի մոտ: Հարուստն ասաց.

— Այո, սիրելիս, ես եմ ձկան դիմաց ոսկե դրամ վճարել քո որդուն: Խղճում եմ, փառավոր որդի ունես. Կցանկանայի նրան որդեգրել:

— Լա՛վ, համաձայն եմ որդուս քեզ տալ, միայն դու պարտավոր ես նրա դիմաց ինձ տալ մի լիքը գլխարկ ոսկի: Քանի որ նա իմ ավագ որդին է և երեխաներիցս ամենահաջողակը:

Ձկնորսն իր խոսքը դեռ չավարտած, հարուստը հափշտակեց նրա գլխարկը, լցրեց լիքը ոսկով և տվեց նրան: Ծերուկը վերջին անգամ համբուրեց տղային և դուրս գնաց:

Առավոտյան հարուստը տղային գեղեցիկ, թանկագին շորեր հագցրեց և ուղարկեց գրագիտություն սովորելու: Ձկնորսի տղան կրթություն ստացավ և այնքան առաջադիմեց, որ քսան տարեկան հասակում հարուստի գործն ինքն էր տնօրինում: Առևտրականի հարստությունը եռապատկվեց: Հարուստն ուրախանում էր նրա խելքով և ուշիմությամբ: Եվ մտածում էր նրան իր փեսան դարձնել: Նա իր ողջ ունեցվածքը կտակեց բարի պատանուն: Իսկ մահից առաջ իր աղջկան նշանեց երիտասարդի հետ և պատվիրեց նրանց ապրել իր տանը: Հարուստի աղջիկը ոչ մի կերպ չէր ուզում դառնալ այն երիտասարդի կինը, որին հայրը գնել էր մի գլխարկ ոսկով: Բացի այդ, գիտեր, որ արքայազնը ուզում է ամուսնանալ իր հետ.

Հարուստի մահվանից հետո, թագավորին հայտնեցին, որ նա իր ամբողջ ունեցվածքը կտակել է երիտասարդին և նշանել իր աղջկա հետ: Թագավորը թագավորական խորհուրդ հրավիրեց երիտասարդի մասնակցությամբ և ասաց.

— Լսիր, երիտասարդ, դու ուզում ես ամուսնանալ հարուստի աղջկա հետ, սակայն իմ տղան նույնպես սիրում է նրան: Յուրաքանչյուրիդ կտամ մեկական նավ և տասը հազար գրոշ: Գնացեք հեռավոր քաղաքներ առևտուր անելու: Վերադառնաք ուղիղ երեք տարուց հետո: Ձեզնից ով շատ դրամ բերի հարուստի աղջկան նրան կտանք կնության: Թագավորը համոզված էր, որ իր տղան առևտրում հաջող դուրս կգա, դրա համար էլ նա այդպիսի պայման առաջարկեց՝ վկաների ներկայությամբ:

Մի քանի օրից հետո երիտասարդը ներկայացավ թագավորին, վերցրեց պայմանավորված դրամը, նավը և գնաց: Անցավ քաղաքից-քաղաք և սկսեց առևտուր անել: Երեք տարուց հետո երիտասարդն այնքան հարստացավ, որ արդեն ուներ վեց նավ, բազում ապրանք և անհաշիվ դրամ: Իսկ թագավորի որդին, իր ունեցած ողջ դրամը ծախսեց, խրվեց պարտքերի մեջ և քիչ էր մնում սովից մեռներ: Տեսնելով, որ վի-

ճակը վատ է, աշխատանքի անցավ հացթուխի մոտ և սկսեց կարկանդակ ու բուլկի վաճառել: Մի անգամ այնպես պատահեց, որ երիտասարդը արքայականին տեսավ շուկայում բուլկի վաճառելիս: Արքայականը ցնցոտիներ էր հագել, նման էր թիթեղագործի, բայց երիտասարդը ճանաչեց նրան և իր հետ տարավ իջևանատուն:

— Որտե՞ղ էիր թաքնվել այսքան տարի, սալյծառ արքայական,— հարցրեց երիտասարդը:— Մի՞թե չես ցտապում քո ողջ վաստակածով վերադառնալ տուն և ամուսնանալ հարուստի աղջկա հետ:

— Գնա, երիտասարդ, մեր հայրենի քաղաքը և ամուսնացիր հարուստի աղջկա հետ: Իսկ ես կմնամ այստեղ, քանի որ իմ ողջ ունեցվածքը ցաքուցրիվ արեցի և որպեսզի քաղցից չմեռնեմ, աշխատանքի մտա հացթուխի մոտ: Մի՞թե ես կարող եմ հորս ներկայանալ այս վիճակով:

Երիտասարդը խղճաց արքայականին և ասաց.

— Մի՛ վախենա: Հիմա ես վեց նավ ունեմ: Հինգը կպիջեմ քեզ, իսկ մեկը կվերցնեմ ես: Դու պատվով կներկայանաս ժողովրդին. թող բոլորը տեսնեն, որ իզուր չես թափառել օտար վայրերում:

— Եթե ինձ փրկես, կլինես իմ եղբայրը և՛ այս, և՛ այն աշխարհում,— բացականչեց արքայականը:

— Ասածն արած է: Միայն թե, բարեկա՛մ, չմտածես թագավորի մոտ պարծենալ, թե այդ նավերը դու ես վաստակել: Այդ պատճառով ես մի խարան կդնեմ քո կոնքին:

— Ուզում ես երկուսը դիր, միայն թե ինձ հնարավորություն տուր մարդավարի տուն վերադառնալ:

Երիտասարդը խարանեց արքայականին, հյուրասիրեց ճաշով և հինգ նավ տվեց: Հետո երկուսն էլ ճամփա ընկան դեպի տուն: Միայն թե հինգ նավերը միասին չարժեին այն մեկ նավին, որով լողում էր երիտասարդը: Նրա նավը իսկական թագավորական էր և ամբողջովին շողշողում էր թանկագին քարերով: Արքայականը հոր մոտ հեծյալ ուղարկեց հայտնելու, որ ինքը վերադառնում է հինգ նավով, իսկ ձկնորսի որդին՝ մեկ: Այդ մասին իմանալով թագավորը շատ ուրախացավ: Ծովափին մեծ բազմություն, կորք և երաժիշտներ էին հավաքվել, որպեսզի պատվով դիմավորեն արքայականին: Նույն ժամին ափ հասավ նաև երիտասարդի նավը: Եվ բոլորը տեսան, որ երիտասարդի նավը արժե տասը այնպիսի նավ, որպիսիք թագավորի տղայի նավերն են: Թագավորը ևս նկատեց նույնը և ստիպեց որդուն պատմել, թե որտեղ է նա եղել և ինչ է վաստակել երեք տարվա ընթացքում: Արքայականը ստիպված էր ամեն ինչ պատմել հորը: Թագավորը հիացած էր և չէր կարող երիտասարդի լավությունը ուրանալ: Երբ հարուստի աղջիկն իմացավ, որ ինքը արքայականի կինը չի լինելու, խիստ տխրեց: Ոչինչ չէր կարող անել: Նա դարձավ ձկնորսի որդու կինը:

— Տեսնո՞ւմ ես, այնուամենայնիվ դարձար իմ կինը,— ասաց նրան երիտասարդը:

— Այո, թող անիծվի այն ժամը, երբ իմ հայրը մտածեց իր ունեցվածքը քեզ կտակել: Եթե այդպես չլիներ, ես երբեք չէի դառնա աղքատի կին, որին հայրս գնել է մի գլխարկ ոսկով:

Երիտասարդի սիրտը ճմլվեց ամոթից: Նա գնաց մի հեռու քաղաք, զանազան ապրանքներ գնեց, նավապետներ վարձեց, որպեսզի նրանք իր նավերով վարեին առևտուրը: Իր բոլոր գործերը վերջացնելով, երիտասարդը նավապետին բացատրեց, թե ինչպես պետք է ճանաչի իր կնոջը, իսկ ինքը գնաց մի վաճառականի մոտ և իրեն համր ձևացնելով մի փոր հացով ծառա վարձվեց: Վաճառականը շատ էր խղճում համրին: Իսկ երիտասարդն աշխատում էր այնպիսի ջանասիրությամբ, որ ասես իր համար էր աշխատում և ոչ թե՝ տիրոջ: Վաճառականը գոհ էր իր ծառայից, որ թեպետ համր էր, բայց գործերն անում էր մեծ հաջողությամբ: Այսպես անցան օրեր, ամիսներ, բավականին ժամանակ անցավ: Եվ ահա մեկ անգամ



Նկ. ՍԱՐՅԱՆ

առևտրականի կրպակը մտավ երիտասարդ նավապետներից մեկը և ապրանք առաջարկեց: Նավապետը տեսնելով երիտասարդին, ողջունեց նրան և տեր անվանեց: Իսկ երիտասարդը նրան պատասխանեց նշաններով, կարծես թե իսկապես համր էր: Վաճառականը, որ լսել էր նավապետի խոսակցությունը երիտասարդի հետ, իր մոտ հրավիրեց նավապետին և

սկսեց հարցուփորձ անել, թե սա որտեղից գիտե համրին և ինչու է նրան տեր անվանում: Նավապետն ամեն ինչ պատմեց վաճառականին և հայտնեց, որ երիտասարդը համր չէ և կարող է խոսել, որ նա հարուստ վաճառական է: Վաճառականը չհավատաց: Վեճը հասավ այնտեղ, որ նրանք գրազ եկան: Եթե քանչորս ժամվա ընթացքում համրը խոսեր, նավապետը նրան կտաներ տուն, իսկ եթե ոչ՝ ինքը նույնպես կդառնար վաճառականի ծառան: Նավապետը առանձնացավ համրի հետ և խնդրեց նրան՝ թեկուզ մի բառ արտասանել և վերադառնալ տուն, քանի որ կինը խիստ կարոտել է ամուսնուն և առևտրական գործը նույնպես պահանջում է տիրոջ հոգատար ձեռքը: Երիտասարդը ոչ մի հնչյուն չարտաբերեց, համրի նման պատասխանում էր նշաններով: Այսպես անցավ քանչորս ժամը, և նավապետը դարձավ վաճառականի ստրուկը: Նավապետը նույնիսկ չմտածեց հակառակվել, քանի որ պայմանը պայման էր: Նավապետը նամակ գրեց իր ընկերներին և երիտասարդի կնոջը, որ ինքը և իր տերը միասին գտնվում են ստրկության մեջ: Ընկերները նամակն ստացան, կարդացին և զարմացան, թե ինչո՞ւ է հանկարծ իրենց տերը համրացել, իսկ իրենց ընկերը ստրկացել մի ինչ-որ վաճառականի: Նրանց հետևից ուղարկեցին երկրորդ նավապետին: Սա ևս արժանացավ առաջինի բախտին: Երրորդ նավապետը սպասում էր իր ընկերներին և տեսնելով, որ չեն վերադառնում, ինքն է գնում և ամեն ինչ տեսնում սեփական աչքերով: Վերադառնալով պատմում է երիտասարդի կնոջը, որ իրոք նրա ամուսինը համր է: Կինն անմիջապես պատրաստվում և ուղևորվում է վաճառականի մոտ: Երիտասարդը, հեռվից տեսնելով իր կնոջը, գնում և վաճառականին ամեն ինչ պատմում է, թե ինչպես է ձուկը վաճառել հարուստին, ինչպես է ամուսնացել նրա աղջկա հետ, և որովհետև կինը նրան կշտամբել է այն բանի համար, որ ինքը գնված է մի գլխարկ ոսկով, վճռել է համր ձևանալ: Երիտասարդը խնդրեց վաճառականին ցույց չտալ, որ ինքը այդ ամենը գիտե, այլ խնդրեց՝ կնոջ առաջ պայման դնել, որ եթե ամուսինը խոսի, կինը նրան հետը տանի տուն, այլապես կնոջը կկախեն: Վաճառականը համաձայնեց: Երիտասարդի կինը բացատրեց, որ նա իր ամուսինն է, և խնդրեց վաճառականին թույլ տալ խոսել ամուսնու հետ: Վաճառականը առաջարկեց գրազ գալ՝ եթե համրը խոսի, թող կինը նրան տանի, եթե ոչ՝ իրեն կկախեն: Նրան տվեց երեսունվեց ժամ ժամանակ: Կինը շատ խնդրեց ամուսնուն թեկուզ մի բառ արտասանել, լաց եղավ, աղերսեց փրկել իրեն: Իսկ նախկին ամոթանքի մասին ոչ մի խոսք չասաց: Ժամանակն անցավ, խեղճը խնդրեց, աղաչեց վաճառականին նրա ստրուկը դառնալ, միայն թե չկախեն իրեն: Վաճառականը լսել անգամ չէր ուզում: Նրան տարան կախաղանի մոտ: Այնտեղ բազմություն էր հավաքվել: Բոլորը խղճում էին կնոջը, որը գրազ գալու պատճառով պետք է մեռներ: Հենց որ պարանը գցեցին նրա վիզը, հանկարծ վաճառականի առաջ հայտնվեց երիտասարդը մի գլխարկ լիքը ընկույզով և ասաց.

— Տե՛ր: Իմ ողջ ծառայության ընթացքում ձեզանից ոչ մի վարձ չեմ պահանջել: Այժմ խնդրում եմ մի գլխարկ ընկույզով վաճառել այդ կնոջն ինձ, որովհետև եթե ամուսինը մի գլխարկ ոսկի արժե, մի գլխարկ ընկույզը կնոջ իսկական արժեքն է:— Այս լսելով կինը վերհիշեց իր անիրավացի խոսքը, որն իրեն մինչև կախաղան հասցրեց: Իսկ վաճառականը տղայից ընդունեց մի գլխարկ ընկույզը և ասաց.

— Քեզ եմ տալիս այս կնոջը ոչ թե նրա համար, որ դու ինձ մոտ այսքան տարիներ ծառայել ես ձրի և հավատարմությամբ, տալիս եմ մի գլխարկ ընկույզով, որովհետև նա ավելին չարժե:

Հավաքվածները ծիծաղեցին այդ պատասխանի համար: Երիտասարդը վերցրեց կնոջը, երկու նավապետներին և ուղևորվեց դեպի տուն:

Այդ ժամանակվանից կինը հարգեց ամուսնուն և ոչ մի անգամ երեսովը չէր տալիս, որ նա գնված է մի գլխարկ ոսկով: Իսկ երիտասարդը երբեք չէր հիշեցնում մի գլխարկ ընկույզի մասին:

*Ռուս. թարգմ. ԵԼԵՆԱ ԴԱՎԹՅԱՆ*






## ԿՐԱԿԻ ՎՐԱՅՈՎ ՔԱՅԼՈՂՆԵՐԸ

Մբենհա խոքրիկ կղզին, ընդամենը երեսուն քառակուսի կիլոմետր, գտնվում է Ֆիջի կղզիներից ամենամեծի՝ Վիտի-Լևուի, հարավային ափի մոտ: Գեղեցիկ լճակներ, փոքրիկ ծովածոցեր, ձյունաճերմակ ավազով լողափեր ունի Մբենհան, սակայն ցեղի՝ «կրակի վրայով քայլողների» կղզյակը:

... Գյուղի մոտ, մարգագետնում փորում են լողի՝ մոտ հինգ մետր տրամագծով և մեկ մետր խորությամբ մի կլոր փոս: Հատակին դարսում են չոր փայտ ու ճյուղեր և վրայից՝ մի կույտ տափակ գլաքարեր: Եվ ահա խարույկը վառվում է, շիկացնելով գլաքարերը: Վառվում է ութ-տասը ժամ, մինչև որ տափակ գլաքարերը շիկանան սպիտակելու աստիճան: Ականատեսները պատմում են, որ ուղղակի անհնարին է մոտենալ լողին. փոսը հսկայական ջերմություն է տարածում: Եթե արմավենու դալար ճյուղը նետես քարի վրա, իսկույն կբռնկվի վառ ջահի նման:

— Վուտո՛ւ, օօօ՛:

Խլացուցիչ կանչը ցնցում է բոլորին: Արարողության առաջնորդը մոտենում է լողին, խրճիթներից դուրս են գալիս պանդանուսի տերևներից կարած կարճ շրջազգեստներով, վառ ծաղիկներից հյուսած պսակներով մի քանի հոգի ևս: Նրանք ոտաբոբիկ հանգիստ մտնում են խարույկի կենտրոնը, գլաքարերի փոքրիկ հրապարակը: Նրանք հստակ ու չափված քայլերով մի պտույտ են գործում լողի ներսում և նույնքան հանգիստ դուրս են գալիս: Այդ արարողությունը տևում է մոտ մեկ րոպե, և մասնակիցներից յուրաքանչյուրը հասցնում է ավելի քան քսա՞ն քայլ անել:

Սակայն սավառուները միակը չեն, որ քայլում են կրակի վրայով: Վերջերս մի լրագրող նման արարողություն է տեսել աշխարհի միանգամայն այլ մասում, Պոլինեզիայից հազարավոր կիլոմետրեր հեռու: Ահա թե նա ինչպես է նկարագրում այդ արարողությունը.

«... Մենք ժամանել էինք ցեղային տոնակատարության օրերին: Դեռևս հեռվից մենք լսեցինք կանչի և թմբուկի ձայներ և, անտառի մեջ խորանալով, դուրս եկանք մի բացատ, որի կենտրոնում հսկայական խարույկ էր վառվում:

Հանկարծ թմբուկները թնդացին, կանչը հնչեց, չխկչխկացին՛ բոժոժները մարակաները: Տղամարդիկ սկսեցին երգել նախ դանդաղ, այնուհետև արագ: Ռիթմը ուժեղանում էր: Պարելով, մութ ստվերները շարժվեցին դեպի կրակը: Նրանք մոտեցան խարույկին, որ լուսավորում էր շր անաձև երկու շիկացած ածխակույտ: Պարողներից մեկը, ինչ-որ ռիթմի տակ, մտավ շիկացած ածուխների կույտի մեջ և այնտեղ շարունակեց իր պարը:

Նրան հետևեց երկրորդը: Փունջ-փունջ կայծեր շուրջը սրփռելով, նա սկսեց բոբիկ ոտքերով կոխկրտել շիկացած ածխակույտը: Երրորդը բոլորին կարմացրեց. մենք քար կտրեցինք, երբ նա մերկ ձեռքը հանգիստ տարավ խարույկի բոցի մեջ, կրակից հանեց շիկացած մակետեն և սկսեց նրա սուր սայրով խազել իր մերկ կոնքերը: Դրանից հետո, նա սուտակի պես փայլող այդ թուրը դրեց գետնին և կանգնեց նրա վրա: Եվ այնքան կանգնած մնաց, մինչև երկաթը սառեց: Մենք ցնցված էինք»:

Հնդկաստանում և Ցեյլոնում, Աֆրիկայում և Հարավային Ամերիկայում, Պոլինեզիայում և արաբական երկրներում կարելի է գտնել «կրակ հնազանդեցնողների»: Ինչո՞վ բացատրել այդ զարմանալի հատկությունը:

Մոտ 80 տարի է, ինչ գիտությունը ուզում է գտնել այդ հարցի պատասխանը:

Ամերիկյան ականավոր գիտնական դոկտոր Մակմիլանը, որն առաջինը փորձեց բացատրել այդ արարողությունը, եզրակացրեց, թե այն քարերը, որոնց վրայով քայլում են ֆիջիացիները, դիատոմիտի կտորներ են: Դիատոմիտը թեթև և ծակոտկեն հանքատեսակ է:

«Ես համոզված եմ,—գրել է Մակմիլանը, որ գաղտնիքը հենց այդ քարերի մեջ է: Դուք կարող եք դիատոմիտի կտորը շիկացնել կարմրելու աստիճան, այնուհետև տառացիորեն մեկ վայրկյանով զցել գետնին ու իսկույն մերկ ձեռքով վերցնել՝ առանց այրվածք ստանալու: Կոտրեցեք այդ քարակտորը, և նրա ներսի մասը դեռևս շատ տաք կլինի»:

Ըստ երկրաբան մասնագետների, դրանք ոչ թե դիատոմիտներ են եղել, այլ՝ անդեզիտ, որը հրաբըխային, կարծր հանքատեսակ է:

Ավստրալիական «Ուոկեբաուտ» հանդեսը այսպես է բացատրել «կրակ հնազանդեցնողների» առեղծվածը. «Արարողությունից մեկ ամիս առաջ, տեղի բնակիչները հավաքում են որոշ տեսակի բադեղներ, չորացնում խարույկի վրա, այնուհետև փոշիացնում և խառնում անհայտ մի բույսի հյութի հետ: Ստացվում է դարչնագույն հեղուկ: Առաջիկա արարո-

ղության մասնակիցները մի քանի օր շարունակ իրենց մարմինն ու ոտքերը շփում են այդ լուծույթով, որն անշուշտ ուժեղ ներգործող թմրեցուցիչ միջոց է: Դրա շնորհիվ, շիկացած քարերի վրայով քայլելիս, նրանք ցավ չեն զգում և այրվածք չեն ստանում»:



Թմրեցնող նյութը, իրոք, կարող է որոշ ժամանակամիջոցում անզգայացնել ցավը, բայց չի կարող մաշկը պահպանել այրվածքից, ասում էին այդ մեկնաբանության հակառակորդները:

Անգլիացիներ Պերվս-Ստյուարտի և Ուոտերստոնի հետազոտությունները որոշ պարզություն մտցրին հարցի մեջ. նրանց զեկուցագիրը, որն հրապարակվեց «Բրիտիշ մեդիկալ ջոռնել» ամսագրում, հաղորդում է. «Ներբաններին մաշկը բնական է. ոչ շատ չոր և ոչ էլ խոնավ, առանց յուղի կամ որևէ այլ բաղադրության հետքերի: Մինչև արարողության սկիզբը, քորոցով ծակելիս և սիգարետի վառվող ծայրը մոտեցնելիս ոտքը ցավային ուժեղ ռեակցիա էր տալիս...

Արարողությունն ավարտելուց հետո, մասնակիցների զննումը ցույց տվեց, որ նրանք բոլորը գտնվել են ջղագրգիռ վիճակում՝ զարկերակն արագ էր աշխատում, ձեռքերը թեթևակի դողում էին, թեև բիբերը և բոլոր ռեֆլեքսները նորմալ էին: Ոտքի տակը մի քիչ կեղտոտված էր մոխիրով և հողով: Այրվածքի նշաններ չհայտնաբերվեցին: Քորոցով ծակելու և վառվող գլանակով այրելու ռեակցիան նույնպիսին էր, ինչպես և սկզբնական հետազոտության ժամանակ...»

Նոր ենթադրությունը այսպիսին էր. «Մաշկի ժամանակավոր թմրեցումը հետևանքն է հիպնոսային հատուկ վիճակի, որն առաջանում է ինքնաներշնչումից կամ մի այլ անձնավորության, օրինակ, արարողությունը ղեկավարող կախարդի, ներգործությունից»:

Բժիշկներն ասում են, թե հիպնոսի օգնությամբ կարելի է մարդու մոտ վերացնել ցավի զգացողությունը և առաջացնել այրվածքի զգացողություն:

Ինչպես վկայում են ֆիջիական սովորություններին տեղյակ մարդիկ, վիլավիլաիրևոյի արարողությունը զգալի չափով կորցրել է իր սկզբնական բնույթը և նրան մասնակցող անձինք այլևս չեն գտնվում կրոնական էքստազի կամ հիպնոսի վիճակում:

Անգլիացի հայտնի ճանապարհորդ Դեվիդ Ատտենբորոն, որը Մբենիա կղզում այդ արարողությունը նկարահանել է ժապավենի վրա, գրում է. «Կրակի վրայով քայլելու» արարողությանը մասնակցած ֆիջիացիներից մեկը գյուղական բուժակ էր, որը բժշկական ուսումնարանն ավարտել է Ֆիջիայի մայրաքաղաք Սուվայում: Ես նրան հարցրի, թե նրանք, նախքան արարողությունը,



20 րոպեի չափ մութ խրճիթում գտնվելու ժամանակ ի՞նչ էին անում: Նրա պատասխանը ինձ համար միանգամայն անսպասելի էր: Պարզվեց, որ «կրակի վրայով քայլելու» արարողության մասնակիցները շատ հանգիստ քննարկում էին առաջիկա արարողությունը»:

Պրոֆեսոր Ուոտերստոնը այդ արարողության գաղտնիքի բանալին տեսնում էր մարզումների մեջ: Խաղաղ օվկիանոսյան կղզիների բնակիչները իրենց ամբողջ կյանքում բոկոտն քայլում են արևից շիկացած ավազի վրայով, այդ այն ժամանակ, երբ եվրոպացիները չեն կարող այդ պայմաններում նույնիսկ մի քայլ անել: Բայց ինչպե՞ս բացատրել այն բազմաթիվ դեպքերը, երբ շիկացած քարերի վրա ֆիջիացիների հետ մեկտեղ քայլել են նաև եվրոպացիները՝ տղամարդիկ ու կանայք, և չեն ստացել ոչ մի այրվածք: Երեք եվրոպացիների հետ մեկտեղ անգլիացի գնդապետ Հաչենը մի այդպիսի փորձ կատարեց: Հետագայում այդ փորձը նա նկարագրեց «Պոլինեզիան ջոռնել» հանդեսում:

«Ինձ համար դժվար է հաղորդել, թե ես ինչ էի զգում այդ արարողության ժամանակ: Հաստատապես կարող եմ ասել մի բան՝ արարողության ամբողջ ընթացքում ես զգում էի, որ քայլում եմ շիկացած քարերի վրայով: Չնայած դրան, ես ոչ մի այրվածք չստացա: Ես ամենևին էլ չէի վախում այդ «դժոխային կածանով» այլ, ընդհակառակը, քայլում էի բավականին զգույշ, վախենալով, թե կարող է ոտքս դիպչել քարի սուր ցցվածքին և կամ հանկարծ կարող է ընկնեմ խարույկի մեջ: Կարող եմ հավաստել, որ իմ ոտքերի մաշկը շատ նուրբ է: Միակ բանը, ինչ ես զգում էի, թեթև ծակոցներն էին, որ հիշեցնում էին էլեկտրական հոսանքից առաջացող ծակոցները, որոնք չէին անցնում մի քանի ժամ շարունակ...»

Իսկ ի՞նչն էր նրանց փրկում: Այս հարցի պատասխանը փորձեց տալ անգլիացի ֆիզիկոս Հարրի Պրայսը: «Կրակ հնազանդեցնողների» գաղտնիքը պարզելու համար նա Հնդկաստանից Լոնդոն

էր հրավիրել հայտնի կախարդ Ահմեդ Հուսայինին և նրա մասնակցությամբ մի շարք հետաքրքիր փորձեր կատարել: Մոտ 4 մետր երկարության փոսի մեջ նա վառեց հինգ տոննա կաղնու փայտ, 500 կիլոգրամ փայտի ածուխ՝ խառնված 18 լիտր պարաֆինի հետ և... «Թայմս» թերթի 50 օրինակ: Վերջինս ծառայել էր որպես կպչան:

Փոսում առաջացած ջերմությունը հասավ Ցելսիուսի 575 աստիճանի: Եվ չնայած դրան, Հուսայինը երեք լայն քայլ անելով հանգիստ անցավ փոսի միջով: Նրա օրինակից ոգևորված փոսով անցան նաև Պրայսի աշակերտներից 5 հոգի և բոլորն էլ ստացան փոքր այրվածքներ: Ամենից քիչ վնասվեց ոմն Ռեջինալդ Էդկոկը: Թեկուզ նա քայլում էր հանգիստ և նույնիսկ մյուսներից ավելի անդադար:



Եզրափակիչ փորձի ժամանակ, որը հաղորդվում էր անգլիական Բի-Բի-Սի հեռուստատեսային ընկերության կողմից, շիկացած ածուխների ջերմությունը բարձրացվեց 800 աստիճանի: Եվ այսուամենայնիվ Հուսայինը 4 մետրանոց ճանապարհը հաղթահարեց 1.6 վայրկյանում, իսկ Էդկոկը՝ 1.8 վայրկյանում, ընդ որում ոչ մեկը նրանցից այրվածք չստացավ:

Իր փորձերի արդյունքներին Պրեյսը «Ֆիզիկական հետազոտությունների կես դար» գրքում մի ամբողջ գլուխ նվիրեց «Գիտությունը բացահայտում է «Կրակի վրայով քայլելու» գաղտնիքը» խորագրով:

«Փորձերը,— կարդում ենք մենք,— մեկընդմիշտ ապացուցեցին, որ կրակի վրայով քայլելու համար չեն պահանջվում ֆիզիկական արտասովոր ունակություններ կամ հոգեկան հատուկ վիճակ, էլ չխոսելով սև մոգության մասին... Բավականաչափ վճռականություն և վստահություն ունեցող յուրաքանչյուր մարդ կարող է առանց որևէ վնասվածք ստանալու քայլել Ցելսիուսի 800 աստիճանի չափ շիկացված մակերեվույթի վրայով... Ամբողջ գաղտնիքն այն է, որ ոտքի մաշկը շատ կարճ ժամանակ է շփվում շիկացած ածուխների հետ, և այդպիսի «կբռսանքի» տևողությունը չպետք է գերազանցի երկու քայլից՝ յուրաքանչյուր ոտքի հաշվով»:

Բայց եթե Պրայսի փորձերի մասնակիցները 3—4 քայլից ավելին չէին անում, ապա ֆիջիացիները և հնդիկները քայլում են 10—20 անգամ և անհամեմատ դանդաղ: Իսկ սուրինամցի հնդիկները նույնիսկ պարում են շիկացած ածուխների վրա:

Ծանոթանանք մի բացատրության հետ ևս: Դրա հեղինակը՝ ամերիկացի դոկտոր Քոուն (Ֆլորիդա նահանգից) իր ճշտությունը ապացուցելու համար նույնիսկ իր գիտնական ընկերների ներկայությամբ քայլեց շիկացած երկաթի թիթեղի վրայով, իսկ այնուհետև, մի փուկի օրինակով, լիզեց շիկացած արդուկը:



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

...Մի անգամ թերթելով դեռևս անցյալ դարի վերջում հրատարակված ֆիզիկայի մի հին դասագիրք, դոկտոր Քոուն հանդիպեց մի մոռացված հայտնագործության, որը ստացել է «Լեյդենֆրոստի էֆեկտ» անունը: Եթե գոլ ջրի մի կաթիլ գցենք խիստ շիկացած մետաղի վրա, այն անմիջապես չի գոլորշիանա, այլ ընդունելով գնդի ձև, կսկսի արագորեն գլորվել: Գնդիկը փաստորեն չի շփվում մետաղի հետ, այլ հենվում է գոլորշուց գոյացած միկրոսկոպիկ բարձիկի վրա, որը և ծառայում է որպես ջերմամեկուսիչ...

Դրա մեջ է, դոկտոր Քոուի կարծիքով, կրակի վրայով քայլելու ամբողջ գաղտնիքը: Մաշկից արտաթորվող քրտինքը մասամբ վերածվելով գոլորշու, ոտքի ներբանների վրա ստեղծում է մեկուսիչ գնդիկներ, որոնք նրան պաշտպանում են շիկացած քարերի հետ կարճաժամկետ շփման ժամանակ: Նման մի բան է տեղի ունենում, օրինակ, երբ թաց մատով ստուգում ենք, թե արդուկը չի՞ տաքացել: Հետագա փորձերը ցույց կտան, թե ճի՞շտ է արդյոք դոկտոր Քոուն, իսկ առայժմ «կրակի վրայով քայլելու» արարողության գաղտնիքների ուսումնասիրությունը շարունակվում է:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ԿԱՐԷՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ հոկտեմբերիկների համար**

ԽԱՉԲԱՌ — ԺԱՄԱՆԱԳԻՐ



Այս խաչբառ—ժամանագիրը լուծելու համար անհրաժեշտ է նախ գտնել 18 հարցերի պատասխանները և դրանք տեղադրել վանդակներում, ժամացույցի սլաքի ուղղությամբ (գծիկները ցույց են տալիս, թե որտեղից պետք է սկսել լրացնել)։

1. Անտարատային ավազախառն քամի։ 2. Արկտիկան ուսումնասիրող խոշոր բևեռագետ և անվանի ճանապարհորդ։ 3. Ժողովրդական պար։ 4. Նշանավոր գրող, որին Մ. Գորկին անվանել է «Պրոլետարական գրականության նախաձեռնողը Ամերիկայում»։ 5. Հայ տաղանդավոր, վաղամեռիկ բանաստեղծ։ 6. Հայկական բալետ։ 7. Նշանավոր ճանապարհորդ, որի անվամբ կոչվում է Հյուսիսային սառուցյալ օվկիանոսում գտնվող ծովերից մեկը։ 8. Լեռնագագաթ՝ Կովկասում։ 9. Մանկական ամսագիր։ 10. Ինքնավար հանրապետության մայրաքաղաք՝ ՍՍՌՄ-ում։ 11. Հայ գրող Ատրպետի հայտնի պատմվածքը։ 12. Ե. Չարենցի պոեմներից։ 13. Հնադարյան քաղաք՝ Վիսլա գետի ափին։ 14. Քաղաք՝ Չինաստանում։ 15. Սովետահայ ականավոր գրող։ 16. Հովհ. Թումանյանի պատմվածքներից։ 17. Ժամանակակից հայ կին գրող։ 18. Հածանավ, որը ազդարարեց նոր դարաշրջանի սկիզբը։





Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ





**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06։

ՎՖ 06774։ Պատվեր՝ 119։ Տպաքանակ՝ 21 750։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 28 III. 1966 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։

Գինը՝ 20 կ.

*Այս հարցերին ճիշտ պատասխանելուց հետո անհրաժեշտ է գծագրի փոքր շրջագծերում ցույց տված թվանշանները փոխարինել խաչբառի համապատասխան տառերով, որտեղ համարիչը ցույց է տալիս, թե որ բառի, իսկ հայտարա՛րը՝ որ տառը պետք է վերցնել։ Լրացնելուց հետո՝ դուք կկարդաք Մ. Գորկու ասույթներից մեկը։*

*Կազմեց՝ Յ. ՂԱՆԴԻԼՅԱՆ*

## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ

1—19 թվանշանները դասավորել այնպես, որ շեղանկյան 4 թվերի գումարը կազմի 39։

*Առաջարկ՝ ՍՈՒՐԵՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*



## Պատասխանում ենք

### «ՊԻՈՆԵՐ» № 2

«ՎԵՑ ԱՆՃՇՏՈՒԹՅՈՒՆ» — 1. Արևը գտնվում է հորիզոնի հյուսիսային կողմում, իսկ այդպիսի բան երբեք չի լինում։ 2. Առարկաների ստվերները պետք է նկարված լինեին ոչ թե դեպի արևը, այլ՝ հակառակ կողմը։ 3. Ջերմոցների ապակեպատ շրջանակները միշտ թեքված են լինում դեպի հարավ և ոչ թե՝ արևմուտք, ինչպես արված է նկարում։ 4. Աշխարհի կողմերը ցույց տվող սյան վրա կա հողմացույց, որի համաձայն քամին փչում է հյուսիսից։ Ուրեմն տղաների բաց թողած թղթե խաղալիքը չէր կարող գնալ քամուն հակառակ։ 5. Նավակը կանգնած է և այդ պատճառով էլ թելը ձգել է դեպի հոսանքն ի վար։ Ուրեմն կարթաձողի թելն էլ պետք է ձգված լիներ հոսանքի ուղղությամբ։ 6. Տան լուսամուտներից մեկի շրջանակները բացվում են դեպի ներս, իսկ մյուսինը՝ դեպի դուրս։ Այդպիսի բան չի լինում։

«ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ». — 1. «Տեսակցություն», Վլադիմիր Մակովսկի։ 2. Հակոբ Հովնաթանյան, «Ն. Թումանյանի դիմանկարը»։

«ԽԱՉԲԱՌ» — ուղղահայաց — 1. Սագ. 2. Յան։ 3. Ավազ։ 4. Սենա։ 5. Կամա։ 6. Ուրան։ 9. Նովակ։ 10. Կուրսկ։ 13. Վոլյա։ 14. Դաղձ։ 15. Լատա։ 16. Տանկ։ 19. Անի։ 20. Ինն։ Հորիզոնական — 3. Արատ։ 5 Կատու։ 7. Գերան։ 8. Վան։ 10 Կավ։ 11. Զոլյա։ 12. Աշուն։ 13. Վարդ։ 15. Լիսա։ 17. Փոկ։ 18. Կաթ։ 19. Աղասի։ 21. Տանձ։ 22. Տնակ։

# ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ





1. Այս նատյուրմորտը պատկանում է 19-րդ դարի խոշորագույն ռեալիստ նկարչի վրձնին։ Հետագայում իմպրեսիոնիստները հաշվի առնելով այդ նկարչի լուսավոր երփնագիրը և նրա ընդվզումը ակադեմիզմի դեմ, այդ նկարչին համարեցին իրենց ուսուցիչը։

Ո՞վ է այդ նկարիչը և ի՞նչ նշանավոր ստեղծագործություններ ունի։

2. «Երաժշտության դաս» նկարը պատկանում է 18-րդ դարի հոլանդական հանճարեղ նկարչի վրձնին, որը դեռևս Ռեմբրանդտից առաջ ստեղծեց խորը ռեալիստական դիմանկարների մի ամբողջ շարք։ Նրա դիմանկարները տարածված են աշխարհի գրեթե բոլոր խոշոր պատկերասրահներում։

Ո՞վ է այդ նկարիչը և ուրիշ ի՞նչ գործեր գիտեք նրանից։

ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ

20 կ.






*Ուռա՜...*

*Փետրվարի 3-ին Լուսնի վրա վայրէջք կատարեց առաջին տիեզերանավը։*

*Ապրիլի 3-ին Լուսնի շուրջն սկսեց պտտվել առաջին արհեստական արբանյակը։*

*Երկուսն էլ արձակեցին սովետական գիտնականները։*